

# ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅՈՒՆ*)

*(Հատվածներ)*

*ՀԱԿՈԲ ՀԱԿՈԲՅԱՆ* — *Նկ. Գր. ԱՂԱՍՅԱՆԻ*

Տեսն՞լ ես, ընկեր ալեկոծումըահեղ օվկիանի,
Ուր երկու ալիք շարժուն սարի պես իրար են վազում,
Իրար են վազում փրփուրը բերնին հովազի նման
Ու հոխորտալով զարնվում, փշրվում ավազի նման...
Իսկ երբ անցնում է վրեժի ռոպեն, հուզումը վայրի,
Տեսն՞լ ես ինչպես հանգստանում է հսկան ջրերի,
Մեղմանում է նա... մանուկի նման ժպտում է ալիք.
Ալիքի միջից մի երգ աննման ծփալով մեղմիկ,
Շոյում լսելիք...

***

Լսե՞լ ես, ընկեր, ըմբոստ երկնքում կոչը որոտի,
Որ դղրդում է որպես մի պայքյուն մեծ բնդանոթի.
Տեսն՞լ ես ինչպես ամպերի կրծքին կայծակը զիգ-զագ
Իր լիգն է մխում փուրկոտ, շեշտակի ու ցնցում աշխարհք.
Կամ ինչպես թափով ծառս-ծառս է լինում ցասկոտ փոթորիկ,
Հսկա ծառերին շոքե-շոք անում, դարձնում խաղալիք,
Մինչ որ տեղում է հեղեղը վայրագ և ինչպես փրկանք՝
Ծանր երկունքից ազատում աշխարհք.
Բնությունը հաղթ ժպտում է ապա պայծառ արեգին—
Որպես պատասխան չար արհավիրքին...

***

Այդպես էր ահա և այն վեհ ժամին հեղափոխության,
Երբ որ բախվեցին իրար հակառակ երկու ախոյան.
Ալիքի նման խուլ մռնչացին երկու հզոր ուժ,
Աշխարհը ցնցվեց... ու եղան կործան կարգերը վատուժ.
Վայրագ հեղեղին, շանթ ու փոթորկին հետևեց թափով
Հեղեղ ցնծության:
Երկունքի միջից մանուկը ծնվեց Մեծ Ազատության:
Ընկե՛ր իմ, ընկե՛ր, ահա մանուկը Հեղափոխության,
Փորձության ժամին երդվիր կրծքովդ պաշտպանել նրան:

*) Պոետն այս բանաստեղծությունը գրել է ռևոլուցիայից առաջ և անվանել է Հեղափոխություն (ռևոլուցիա)։




*Լենինի—Ստալինի գործի պայքարին եղի՛ր պատրաստ*

№ 11

ՆՈՅԵՄԲԵՐ

1952 Թ. ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ 24-ՐԴ ՏԱՐԻ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՄՍԱԳԻՐ ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ԵՎ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԻ ՀԱՄԱՐ

Սովետների առաջին համագումարում ժողովրդի թշնամիները՝ մենշևիկներն ու էսէռները հայտարարեցին, թե Ռուսաստանում չկա այնպիսի պարտիա, որ կարողանա իշխանությունն իր ձեռքը վերցնել: Լենինն այդ ժամանակ իր տեղից բացականչեց.

— Կա այդպիսի պարտիա, դա բոլշևիկների պարտիան է:

Նկարիչ Ե. Կիբրիկը իր «Կա այդպիսի պարտիա» նկարում պատկերել է այդ պատմական մոմենտը:

# ՁՄԵՌԱՅԻՆ ՊԱԼԱՏԻ ԳՐԱՎՈՒՄԸ

Լ. ՍԱՎԵԼԵՎ

Նկ. Վ. ԹԵՎԱՆՅԱՆԻ

## 1. ՈՒԼՏԻՄԱՏՈՒՄ

Վրա հասավ երեկոն։ Ձմեռային պալատը շրջապատված էր բոլոր կողմերից։ Ծովակալության շենքից մինչև Մարսյան դաշտը, ապստամբները գրավել էին բոլոր փողոցները։

Խավարը խտանում էր։ Ցուրտն ավելի էր ուժեղանում։ Մթության մեջ մերթ այստեղ, մերթ այնտեղ սկսեցին բռնկվել կրակի կետեր. ապստամբները խարույկներ էին վառում։ Շուտով ամբողջ Մարսյան դաշտը լուսավորվեց խարույկների անհավասար լույսով։ Զինվորները և բանվորները խիտ խմբերով տեղավորված էին խարույկների մոտ, տաքացնում էին ձեռքերը, չորացնում անձրևից և թաց ձյունից խոնավացած շինելները։ Մի քանիսը արագ քայլերով անց ու դարձ էին անում, որպեսզի ցուրտ քամուց չսառչեն։ Մյուսները, հենված հրացաններին, մտածկոտ նայում էին կրակին։ Նրանք գիտեին, որ շուտով կռիվը կսկսվի և նրանց մի քանիսի համար այդ ժամը կյանքում վերջինը կլինի։

Քամին հարձակվում էր ուժգնությամբ, մերթ բոցը երկինք հանելով, մերթ թեքելով գետնին։ Դրանից մարդկանց ստվերները փոխում էին իրենց գծագրությունը. մերթ սեղմվում էին, մերթ հանկարծ, ձգվելով գետնին, սարսափելի ձևով երկարում։

— Ընկերնե՛ր,— խարույկներից մեկի մոտ հնչուն ձայնով ասաց մի երիտասարդ զինվոր։— Դուք արդյոք գիտե՞ք, թե ինչ ենք մենք ուզում, ինչի վրա ենք մենք այսօր գնում։

— Գիտենք,— մթության միջից պատասխանեցին նրան զինվորների ձայները։

— Իսկ եթե գիտեք,— շարունակեց զինվորը, ապա բոլորիդ հասկանալի է, որ այս գիշեր վճռվում է մեր ճակատագիրը, կամ ապրել որպես ազատ քաղաքացիներ, կամ մեռնել։ Կեցցե՛ բանվորների, զինվորների և գյուղացիների դեպուտատների Սովետը։ Կեցցե՛ Լենինը։ Ուռա՛։

— Ուռա՛,— գոչեցին զինվորները և վերցնելով հրացանները, շարժվեցին Ձմեռային պալատի ուղղությամբ։

Բայց ջոկատի պետը ետ պահեց նրանց.

— Սպասել Ռազմա-ռևոլյուցիոն կոմիտեի կարգադրությանը,— ասաց նա։

Եվ զինվորները վերադարձան իրենց նախկին տեղերը։

Այդպիսի խոսակցություններ էին ծագում ամբողջ հսկայական տարածության վրա՝ Ամառային այգուց մինչև Ծովակալության շենքը։ Ամենուրեք կարմիր գվարդիականները, նավաստիները, զինվորները, սպասելուց հոգնելով ձգտում էին շուտ սկսել կռիվը։ Եվ ամենուրեք նրանք համբերությամբ շարունակում էին սպասել Ռազմա-ռևոլյուցիոն կոմիտեի հրամանին։ Իսկ Ռազմա-ռևոլյուցիոն կոմիտեն դեռևս կռվի ազդանշան չէր տալիս։ Ռազմա-ռևոլյուցիոն կոմիտեն Ձմեռային պալատ ուղարկեց իր ուլտիմատումը, վերջին վճռական պահանջը՝ առանց կռվի անձնատուր լինելու առաջարկը։

Ռազմա-ռևոլյուցիոն կոմիտեն հակառակորդին քսան րոպե ժամանակ տվեց մտածելու համար։ Քանի դեռ այդ քսան րոպեն չէր անցել, կռիվն սկսել չէր կարելի։

Եվ ահա անցավ քսան րոպեն։ Վերջին, քսաներորդ րոպեին եկավ հակառակորդի պատասխանը։ Ի՞նչ էր որոշել նա։ Երևում էր, որ նա դեռ ոչինչ չէր որոշել։ Նա նորից տաս րոպե էր խնդրում պատասխան տալու համար։

Ռազմա-ռևոլյուցիոն կոմիտեն կրկին տաս րոպե է տալիս։ Մեկը մյուսի ետևից դանդաղ սահում էին րոպեները. բայց ահա դրանք էլ անցան։ Այժմ ի՞նչ կպատասխանի թշնամին։ Նա ոչինչ չի պատասխանում, նա լռում է։ Պարզ է դառնում, որ թշնամին այդ ամբողջ ժամանակ խորամանկում է։ Ժամանակավոր կառավարությունը խաբում է ապստամբներին. Նա պարզապես ձգձգում է գործը, աշխատում է ժամանակ շահել։ Նա դեռ հույս ունի, որ շուտով ռազմաճակատից օգնության կգան իր զորքերը։ Այն ժամա-



նակ Ռազմա-ռևոլյուցիոն կոմիտեն որոշում է գրոհն սկսել։

Կռիվն սկսելու ազդանշանը հայտնի էր ռևոլյուցիոն ջոկատների բոլոր պետերին. Պետրոպավլովսկի ամրոցի վրա կվառվի կարմիր լապտերիկը։ Դրանից հետո ամրոցը կսկսի թնդանոթներից կրակել պալատի վրա։

Ահա Պետրոպավլովսկի ամրոցի գմբեթի ծայրին վառվում է կարմիր լապտերիկը։ Տեսնելով այդ ազդանշանը, «Ավրորա» հածանավը հրաձգություն է սկսում դատարկ արկերով։ Հիմա Պետրոպավլովսկի ամրոցը պետք է սկսի հրաձգությունը մարտական արկերով։

Արդեն Ձմեռային պալատի բոլոր լուսամուտներում միանգամից հանգան լույսերը։

Պալատի դիմացի հրապարակը և մերձակա փողոցները մթնեցին ու սևացան։ Բանվորները, զինվորները, նավաստիները բարձրացրին իրենց հրացանները։ Գերանապատ թաքստոցի ետևում յունկերները կպան գնդացիրներին։

## 2. ԳՐՈՀԸ

Հենց որ Պետրոպավլովսկի ամրոցն սկսեց գնդակոծել Ձմեռային պալատը, կարմիր գվարդիականները, նավաստիները, զինվորները իսկույն ևեթ սկսեցին առաջ շարժվել հրապարակով և կռիվը բորբոքվեց նոր ուժով։ Դա մի անտեսանելի մարտ էր. ամեն ինչ ընկղմված էր խավարի մեջ, ամեն ինչ ձուլվել էր, չէր կարելի տարբերել ոչ շենքերը, ոչ մարդկանց։ Յունկերները կրակում էին կուրորեն, նշան բռնելով դեպի այն կողմը, որտեղից հարձակվում էին ռևոլյուցիոն ջոկատները։ Նույն ձևով պատասխանում էին նրանց կարմիր գվարդիականները, նավաստիներն ու զինվորները։ Միայն Ձմեռային պալատի առանձին մասերն էին հանկարծ երևում մթության միջից և սկսում էին լուսավորվել աղոտ լույսով, երբ նրանց վրա ընկնում էին լուսարձակների ճառագայթները։ «Ավրորան» նեվայից իր լուսարձակն ուղղել էր պալատի վրա։ Լույսի կապտավուն ճառագայթը սահում էր պատերի և տանիքի վրայով, մթությունից դուրս բերելով պալատի մերթ այս, մերթ այն կտորը։

Հրապարակը սուզվում էր խավարի մեջ. բայց այդ տագնապալի մթությունը լի էր հնչյուններով։ Ծովի թնդյունը հիշեցնող անդադար աղմուկը փռված էր հրապարակի վրա։ Ամեն ինչ այստեղ ձուլվում էր մի միասնության մեջ՝ մարդկանց անթիվ ձայները, հրացանների և գնդացիրների ճարճատյունը, թնդանոթների արկերի շառաչը։

Խավարի և աղմուկի միջև ռևոլյուցիոն ջոկատները գրավեցին հրապարակը և քայլ առ քայլ շարժվեցին առաջ։ Այդ ժամանակ մի քանի տասնյակ ռևոլյուցիոն զինվորներ որոշեցին մի խիզախ քայլ կատարել. նրանք փորձեցին Ձմեռային պալատ թափանցել հիվանդանոցի միջով։

Հիվանդանոցը, որտեղ պառկած էին ռազմաճակատից եկած վիրավոր մարտիկները, տեղավորված էր պալատի այն մասում, որը դուրս էր եկել դեպի Ծովակալության շենքը։

Զինվորները հեշտությամբ կարող էին համաձայնել վիրավորների հետ։ Վերջիններս բաց արեցին հիվանդանոց տանող դուռը և զինվորները լուռ ու մունջ, մեկ առ մեկ սկսեցին թափանցել այնտեղ, իսկ այնտեղից նրանք սողալով անցնում էին պալատի ներքին շինությունները, և այնտեղ խառնվում թշնամու զորքերին։ Զինվորները կարծում էին, թե հագուստով իրենց հնարավոր չէ տարբերել նրանցից, ովքեր կռվում էին ժամանակավոր կառավարության կողմում. չէ՞ որ նրանք հագել էին նույն համազգեստը, նույն գորշ, պաշտպանական գույնի շինելները։

Այդպես, մարտի ամենաեռուն պահին պալատում մի քանի տասնյակ կարմիր ագիտատորներ երևացին։ Կյանքները վտանգի ենթարկելով, նրանք այնտեղ իրենց դժվարին աշխատանքն էին տանում, խոսակցության էին բռնվում յունկերների հետ, համոզում էին նրանց՝ դադարեցնել դիմադրությունը, հակառակորդի զորքերի մեջ սերմանում էին անվստահություն, շփոթություն և վախ։ Իսկ ռևոլյուցիոն ջոկատները չէին դադարեցնում հարձակումը. ավելի էին մոտենում պալատին։

Արդեն կեսգիշեր էր, երբ նրանք նորից գրոհի նետվեցին։

Հանկարծ դադարեցին հրացանային և թնդանոթային կրակոցները։ Կտրվեցին ձայները։ Կարծես ամեն ինչ լռեց։ Եվ լռության մեջ, երեք կողմից՝ Ծովային, Միլիոննի փողոցներից և Ալեքսանդրյան այգուց հրապարակով դեպի պալատը նետվեցին ռևոլյուցիոն ջոկատները։

Այդ ժամանակ նորից խոսեցին թշնամու գնդացիրները։ Սոսկալի արագությամբ բաց էին թողնում նրանք իրենց գնդակները։ Օդը ճեղքելով թռան ձեռքի նռնակները։ Իսկ կարմիր գվարդիականների, նավաստիների, զինվորների շղթաները շեշտակի սլացան առաջ, վազեցին ուղիղ թշնամու վրա՝ դեպի պալատը։



Լուսարձակի ճառագայթը վայրկենապես լուսավորեց թշնամու ամրությունները, յունկերների լարված դեմքերը, նրանց սարսափից սառած աչքերը։ Ապա ամեն ինչ ձուլվեց մի մութ կծիկում։ Նորից մի ակնթարթ՝ և հանդիսավոր, հաղթական աղաղակը հնչեց արդեն տապալված դերանների այն կողմում։ Յունկերները խորտակված էին, տապալված, ետ մղված։

Կարմիր գվարդիականները դես ու դեն շպրտեցին դերանները, ջարդեցին դռները, ընկան դարբասների վրա, մագլցեցին վեր։ Եվ ահա հսկայական երկաթե դարբասի երկու մասերը ցնցվեցին, սկսեցին դանդաղ և սահուն բացվել։

Ինչպես հեղեղ պալատ սլացան ռևոլյուցիոն ջոկատները։ Նրանց առաջ բացվեց սպի-

տակությամբ փայլող լայն սանդուղքը, ընդարձակ սրահը, որտեղ դրված էին մարմարե արձանները և կախված էին նկարները:

Յունկերները կրակում էին վերևից, թաքնվելով սանդուղքի ճաղերի ետևում: Նրանք պահվում էին արձանների ետևը և այդտեղից խփում հարձակվողներին:

Թշնամին ամեն տեղ էր և ո՛չ մի տեղ. նա թաքնվեց, դարձավ աննկատելի, ինչպես թավ անտառում: Նա իր մասին հանկարծակի կրակոցներով իմաց էր տալիս բոլոր կողմերից: Անհրաժեշտ էր շարժվել առաջ զգուշորեն, խնամքով մաքրելով մի շենքը մյուսի ետևից:

Մոտ մեկ ու կես ժամ տևեց այդ մարտը պալատում: Վերջապես ռևոլյուցիոն ջոկատները հասան այն սենյակը, որտեղ նիստի էին հավաքված ժամանակավոր կառավարության մինիստրները: Դռների մոտ կանգնած էր յունկերների ջոկատը՝ հրացանները պատրաստ պահած: Կարմիր գվարդիականները նրանց ձեռքից խլեցին հրացանները և սենյակ մտան:

Գիշերվա ժամի երկուսին մինիստրները ձերբակալված էին: Ժամանակավոր կառավարությունը դադարեց գոյություն ունենալուց:



## Ռուսաց լեզուն

*ՍԱՐՄԵՆ*

*Նկ. ԱՐ. ԶԱՔԱՐՅԱՆԻ*

Մի բարեսիրտ ծերուկ է մեր
Ռուսաց լեզվի դասատուն.
Նա շատ ու շատ սիրում է մեզ,
Ինքն էլ ապրում մեր սրտում:

Շքանըշանը Լենինի
Նրա կուրծքն է զարդարում,
Կարծես նա մի ջահել լինի,
Յոթանասունյոթ տարում:

Այսպես է միշտ խոսում հանդարտ
Մեր սիրելի դասատուն.
Եվ այդ խոսքը խոր ու հաստատ
Միլ է զգում մեր սրտում.

— Սիրեցեք դուք ռուսաց լեզուն
Ձեր մայրենի լեզվի պես,
Ուր էլ լինեք, որ աշխարհում,
Նա օգնության կգա ձեզ:

Հիշեցեք, որ ռուսաց լեզվով
Անմահ Լենինն է խոսել,
Մի օր Պուշկինն է նրանով
Իր վառ երգերը հյուսել:

Հիշեցեք, որ ռուսաց լեզվով
Մեծ Ստալինն է խոսում,
Հիշեցեք և անհուն սիրով
Սովորեցեք այդ լեզուն:

## ՄԵՐ ԴԱՍԱՐԱՆԸ

*Մ. ԿՈՐՅՈՒՆ*

Ծաղկամաններով շքեղ զարդարված,
Արևի պայծառ շողերով լցված,
Մեր դասարանն է մեզ միշտ հարազատ,
Ամեն թե զարուն նա կանաչազարդ:
Մեր դասարանի դռան ճակատին
Շքեղ նկարն է Մեծ Առաջնորդի,
Որ իր ժպիտով և սիրով անմար
Հետևում է մեզ հոր պես հոգատար:
Այստեղ կոփում են մեր սիրտն ու հոգին
Ուսուցիչները մեր՝ հմուտ դարբին:
Միթե՞ կարող ենք մեկ առ մեկ թվել
Հերոսներին, որ այստեղ սովորել,
Դարձել են կյանքի խաղաղ շինարար,
Նավաստի, խառատ, կամ մեքենավար,
Օդաչու, տանկիստ, կամ քարտաշ վարպետ,
Անվանի արտիստ, կամ ճարտարապետ,
Ահա ինչպիսի գործեր է արել
Մեր դասարանը: Կյանքն է զարդարել
Իր ծոցում սնած զիտուն սաներով,
Քաջ և անվանի իր հերոսներով:
Մեր ամբողջ սրտով երդվում ենք անա,
Անաղարտ պահել պատիվը նրա,
Դառնալ մեր երկրին արժանի մարդիկ,
Մեծ կոմունիզմի կառուցման մարտիկ:



# ԼԵՆԻՆԻ—ՍՏԱԼԻՆԻ ՊԱՐՏԻԱՅԻ 19-ՐԴ ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ

Այս տարի, հոկտեմբերին, Մոսկվայում տեղի ունեցավ Սովետական Միության Կոմունիստական Պարտիայի 19-րդ համագումարը: Համագումարը լսեց ու քննարկեց մեր երկրի համար վիթխարի նշանակություն ունեցող հարցեր: Օրակարգի առաջին հարցի առթիվ՝ ՀամԿ(բ)Պ Կենտրոնական Կոմիտեի աշխատանքի մասին, հաշվետու զեկուցում տվեց Պարտիայի Կենտկոմի քարտուղար ընկեր Գ. Մալենկովը: Ապա վերստուգիչ հանձնաժողովի նախագահ ընկ. Պ. Գ. Մոսկատովի զեկուցումից հետո համագումարը լսեց Սովետական Միության Պետպլանի նախագահ ընկ. Մ. Զ. Սաբուրովի զեկուցումը՝ 1951—1955 թվականների հինգերորդ հնգամյա պլանի վերաբերյալ և ընկ. Ն. Ս. Խրուշչեվի զեկուցումը՝ պարտիայի նոր կանոնադրության մասին:



Ամբողջ սովետական ժողովուրդը չտեսնված հետաքրքրությամբ էր հետևում համագումարի աշխատանքներին: Այլ կերպ լինել չէր կարող:

Լենինի—Ստալինի փառապանծ պարտիայի նախորդ համագումարներից յուրաքանչյուրը մի նոր, պայծառ էջ է բաց արել սովետական ժողովրդի պատմության մեջ:

Իր ծագման օրից Լենինի—Ստալինի պարտիան կապված է եղել ժողովրդի հետ, ծառայել է միայն և միայն հարազատ ժողովրդին: Դեռ հին կարգերում, ցարի օրոք, պարտիան Լենինի և Ստալինի գլխավորությամբ անդուլ պայքար է տարել ժողովրդի ոխերիմ թշնամիների՝ բուրժուաների և կալվածատերերի դեմ: Նա օրեց-օր, տարեց-տարի համախմբել է բանվորների, գյուղացիների ուժերը՝ շահագործողների ծանր լուծը խորտակելու համար:



Լենինի և Ստալինի առաջնորդությամբ Կոմունիստական Պարտիան, առաջինն ամբողջ աշխարհում, խորտակել է արնախում շահագործողների՝ բուրժուաների և կալվածատերերի իշխանությունը, մեր երկրի ժողովուրդներին ազատել դաժան շահագործումից, զրկանքներից, տանջանքներից և ստեղծել բանվորների ու գյուղացիների իշխանություն:



Ինչ խոսք, որ դա՝ շահագործողների լուծը տապալելը, և բանվորա-գյուղացիական իշխանություն ստեղծելը, պատմության մեջ չտեսնված մեծ հաղթանակ էր: Սակայն մեր հարազատ պարտիան դրանով բավարարվել չէր կարող: Նրա վերջնական նպատակը եղել է և մնում է կոմունիստական հասարակակարգի կառուցումը: Իսկ դրա համար անհրաժեշտ էր ժողովրդին առաջնորդել հաղթանակից հաղթանակ. երկրում ստեղծել հզոր արդյունաբերություն, առաջավոր, տեխնիկապես զինված գյուղատնտեսություն, կրթել



ժողովրդին, բարձրացնել նրա կենսական ու կուլտուրական մակարդակը:

Այդ մեծ, վիթխարի աշխատանքը ևս իր վրա վերցրեց կոմունիստների հերոսական, մարտերում կոփված պարտիան:

Պարտիայի, սիրելի առաջնորդ Ստալինի գլխավորությամբ սովետական ժողովուրդը պատմական կարճ ժամանակամիջոցում, չտեսնված հաղթանակներ ձեռք բերեց կոմունիզմի կառուցման գործում:

Կառուցվեցին հզոր գործարաններ, էլեկտրակայաններ, ֆաբրիկաներ, հանքեր...



Մեր երկրի քարտեզի վրա, նախկին ամայի վայրերում նոր քաղաքներ, նոր երկաթուղիներ հայտնվեցին. ամենուրեք բացվեցին նոր ուսումնական հաստատություններ, որոնք ժողովրդական տնտեսությանը տվեցին անհրաժեշտ մասնագետներ:



Սակայն սովետական ժողովրդի այդ խաղաղ, ստեղծագործական աշխատանքն ընդհատվեց: Արյունարբու ֆաշիստները հարձակվելով մեր երկրի վրա, ցանկանում էին զավթել այն, տիրել նրա անհատնում հարստություններին, ստրկացնել սովետական ազատասեր ժողովրդին:

Ահեղ, դաժան պատերազմը բազմաթիվ թանկագին կյանքեր խլեց մեզնից, ավերեց մեր երկրի բազմաթիվ գյուղեր ու քաղաքներ: Եվ դարձյալ շնորհիվ Կոմունիստական Պարտիայի, սիրելի առաջնորդ Ստալինի իմաստուն քաղաքականության և ղեկավարության սովետական ժողովուրդը հաղթող դուրս եկավ այդ պատերազմից: Նա ոչ միայն ջախջախեց ուժեղ, մինչև ատամները զինված թշնամուն, այլև Եվրոպայի և Ասիայի մի շարք ժողովուրդների ազատագրեց դարավոր ստրկությունից:



Պատերազմից հետո Մեծ Ստալինը մեր ժողովրդի և պարտիայի առաջ խնդիր դրեց՝ արագ բուժել պատերազմի վերքերը, արագ վերականգնել ավերված քաղաքներն ու գյուղերը և առաջ տանել կոմունիզմի հոյակապ շենքի կառուցումը:



Սովետական ժողովուրդը այդ խնդիրը ևս պատվով կատարեց: Նրա հերոսական աշխատանքի, հերոսական ջանքերի շնորհիվ շատ շուտով մեր երկրում սկսեցին արտադրել ավելի շատ մեքենաներ, նավթ, հանքանյութեր, գործվածքներ, կոշկեղեն, հաց, էլեկտրականություն, քան մինչև պատերազմը: Դրա հետ միասին ծավալվեց այնպիսի շինարարական աշխատանք, ինչպիսին աշխարհը երբեք չի տեսել: Հիմք դրվեց Վոլգա—Դոն, Գլխավոր Թուրքմենական, Ղրիմի, Հարավ-Ուկրաինական ջրանցքների, Կույբիշևի, Ստալինգրադի և բազմաթիվ այլ էլեկտրակայանների կառուցմանը: Ժողովուրդն այդ կառուցումներն անվանեց կոմունիզմի մեծ կառուցումներ, որովհետև դրանք մեր երկրում սոցիալիզ-

մից կոմունիզմին անցնելու հիմք են ստեղծում:

Բայց մի՞թե դրանցով սպառվում է կոմունիզմի կառուցումների թիվը: Իհարկե ոչ: Միայն առաջիկա՝ 1951—1955 թ.թ. հնգամյակի ընթացքում երկրում նորից կառուցվելու են բազմաթիվ գործարաններ, ֆաբրիկաներ, հանքեր և երկաթուղիներ... Այդ կառուցումների, եղած գործարանների լայնացման շնորհիվ մեր Հայրենիքը կարտադրի ավելի շատ մետաղ, մեքենաներ, քիմիական նյութեր, անտառանյութեր, հագուստեղեն, կոշկեղեն, սննդամթերք: Դրա հետ միասին էլ ավելի կզարգանա գյուղատնտեսությունը: Նախկին չոր անապատները կծաղկեն, կլայնանան ցանքատարածությունները, կավելանա հացաբույսերի, տեխնիկական կուլտուրաների արտադրանքը, անասունների գլխաքանակը և մթերատվությունը: Երկրում կստեղծվի մթերքների այնպիսի առատություն, ինչպիսին դժվար է պատկերացնել:

Այդ բոլորը հնարավորություն կտա սովետական ժողովրդին կերտելու այն վիթխարի, հոյակապ շենքը, որի անունն է կոմունիզմ: Կոմունիստական հասարակակարգը մարդկության ամենամեծ և անգնահատելի երջանկությունն է: Եվ մեզ դեպի այդ երջանկությունն է տանում մեր սիրելի Կոմունիստական Պարտիան, մեր ժողովրդի հանճարեղ ուսուցիչ մեծ Ստալինը:

Ահա թե ինչու այնքան խորն է սովետական ժողովրդի սերն իր հարազատ պարտիայի և սիրելի առաջնորդի նկատմամբ: Մեր փառապանծ պարտիայի, մեծ Ստալինի նկատմամբ նույն անհուն սերն են տածում նաև աշխարհի բոլոր ժողովուրդները: Դա և միայն դա է պատճառը, որ 19-րդ համագումարին ողջունելու էին եկել քառասուն չորս երկրների եղբայրական պարտիաների ներկայացուցիչները: Դա և դա է պատճառը, որ աշխարհի ժողովուրդները մեծ ցնծությամբ ընդունեցին իրենց սիրելի ուսուցիչ մեծ Ստալինի ճառը 19-րդ համագումարում:

Հանդես գալով համագումարում, ընկեր Ստալինը աշխարհի ժողովուրդների առաջ մեծ ու կարևոր խնդիրներ դրեց: Նա ցույց տվեց այն ուղին, որով ընթանալով, եղբայրական պարտիաները ի վիճակի կլինեն իրենց ժողովուրդներին ընդառաջելու դեպի երջանիկ ապագա՝ դեպի կոմունիզմը: Ղեկավարվելով սիրելի ուսուցչի ցուցումներով, այդ եղբայրական պարտիաները հենց այդպես էլ կվարվեն. այնտեղ, ուր դեռ տիրում են բուրժուաները, նրանք կբարձրացնեն ազատության դրոշը, ժողովուրդներին կազատեն շահագործողների ծանր լծից, իսկ այնտեղ, ուր ժողովուրդներն արդեն փրկվել են այդ ծանր լծից, մեզ հետ հաստատ ու վստահ կքայլեն դեպի կոմունիզմ, որովհետև բոլոր ճանապարհները տանում են դեպի կոմունիզմ:



# ՀՐԱՊԱՐԱԿՈՒՄ

Խ. ԳՅՈՒԼՆԱԶԱՐՅԱՆ

Նկ. Ա. ՋՈՐՊԱՋՅԱՆԻ

Նոյեմբերի վեցին ոչ ոք այնքան հուզված չէր, որքան դպրոցի ավիո-մոդելիստական խմբակի անդամները։ Երեկոյան բոլորն ամպամած երկնքին էին նայում. ամեն ինչ կախված էր նրանից, թե վաղը՝ նոյեմբերի յոթին ինչպիսի եղանակ կլինի, արդյոք անձրև կգա՞, թե ոչ։

— Շքերթ, իհարկե կլինի,—ասաց Էդիկը։

— Իհարկե,— մտազբաղ հաստատեց Յոլակը։

— Իսկ մոդելնե՞րը, մրցությո՞ւնը...

— Տղե՛րք,— հևասպառ դպրոցի բակն ընկավ Արամը,— տղե՛րք, ընկեր Հակոբյանը զանգահարեց օդերևութաբանական կայան. վաղը անձրև չի լինի։

Բոլորն ուրախացան և սկսեցին կատակել։

— Տեսնես ո՞վ է հաղթելու,— ասաց Էդիկը։

— Անպոչ Թռչունը,— ծիծաղեց Արամը դառնալով դեպի Վարդանը։

«Անպոչ Թռչունն» իր պատմությունն ուներ։

Վարդանը մոդելիստների խմբակ էր ընդունվել վեց ամիս առաջ։ Նա իր պատրաստած առաջին մոդելի թևերի վրա կապույտ ներկով գրել էր. «Թռչուն»։ Բայց «Թռչունն» անհաջող մոդել էր, հենց առաջին թռիչքին նրա պոչը կոտրվեց։

— Այ քեզ Թռչո՜ւն,— ծիծաղեց Էդիկը։

Իսկ Արամը վրա բերեց.

— Անպոչ Թռչուն։

Եվ այդ անունը մնաց։ Դրանից հետո Վարդանը հրաշալի մոդելներ էր պատրաստում։ Նրա մոդելներից մեկը, նույնիսկ, մրցանակ շահեց, բայց «Անպոչ Թռչունը» չմոռացվեց։ Երբ վերադառնում էին դաշտից, դպրոցի ընկերները հարցրին.

— Ո՞վ շահեց։

Եվ բոլորը միաբերան պատասխանեցին։

— Անպոչ Թռչունինը։

***

Օդերևութաբանական կայանի տվյալները ճշտվեցին։ Գիշերը երկինքը պարզվեց, իսկ առավոտյան արևն այնպես էր փայլում, որ կարծես այժմ ոչ թե նոյեմբերն էր, այլ պայծառ, տաք մայիսը։

Շքերթը տասին էր սկսվելու, բայց դեռ յոթը չեղած դպրոցի բակը լիքն էր աշակերտներով։ Կամաց-կամաց ուսուցիչներն էլ էին գալիս, իսկ ֆիզկուլտուրայի դասատու Վաչեն արդեն տղաների կեցվածքն ու հագուստներն էր ստուգում։ Շքերթում դպրոցի շարքը նա էր ղեկավարելու։

Մոդելիստների խմբակն ամենից լավ էր դուրս եկել։ Տղաները հագել էին երկնագույն շապիկներ ու կարճ սև անդրավարտիքներ։ Կարմիր մետաքսյա վզկապները շողշողում էին արևի տակ, իսկ ամեն մեկի ձեռքին, ուսից բարձր փայլում էին փոքրիկ մոդել-



ները, որ տղաները պիտի բաց թողնեին շքերթից հետո, հրապարակում։

— Դե՛, ձեզ տեսնեմ,— հուզված ասում էր խմբակի ղեկավարը, տասներորդցի Կարոն,— ասում են, Աբովյանի անվան դպրոցի տղաները շատ լավ մոդելներ են պատրաստել։

— Անհոգ կաց, կհաղթե՛նք,— ասաց Արամը։

— Ո՞վ գիտե,— մտահոգված նկատեց Վարդանը։

— Դե՜, խոսքը քո մասին չէ, Անպո՛չ Թռչուն,— խայթեց Արամը։

Վարդանը ոչինչ չասաց, բայց տղաները սաստեցին Արամին։

— Տեղերում, շարվի՛ր,—լսվեց հրամանը։



Լենինի հոյակապ արձանի մոտ, տրիբունի վրա կանգնել էին ռեսպուբլիկայի ղեկավարները։ Շրջապատի բարձր շենքերի սյուների խոյակները, կարնիզներն ու պատուհանները զարդարված էին ծաղիկներով ու առաջնորդների մեծադիր նկարներով։ Դիմացը հրապարակի շատրվանի ջրերի մեջ բեկվում էին արևի ճառագայթները։ Ջրի մանրիկ կաթիլներն այնպես էին շողշողում, որ թվում էր, թե շատրվանի մոտի բարձր շենքի տանիքից մի աներևույթ ձեռք անընդհատ երփներանգ քարեր էր շաղ տալիս։ Իսկ շարքերն անցնում էին հպարտ ուրախությամբ։ Ղեկավարները տրիբունից նրանց էին նայում, իսկ մեծ շենքի վրա ծաղկազարդ հսկայական շրջանակի մեջ ամփոփված նկարից Ստալինը և՛ նրանց էր նայում, և՛ ղեկավարներին։

Դպրոցի շարքն անցավ տրիբունի առջևով։ Մոդելիստներն էլ մյուսների հետ բարձրաձայն ուռայով պատասխանեցին տրիբունից արձակված ողջույնին և թեքվելով կանգ առան հրապարակի մի կողմը, մեջքով դեպի շատրվանը։ Ուրիշներն էլ եկան. այդ օրը երեք դպրոցների մոդելիստներն էին մրցելու։

Պիոներական շարքերն անցան։ Շուտով քաղաքի աշխատավորների բազմամարդ երթն էր սկսվելու։ Մրցման հրամանատարը՝ մի օդաչու կապիտան, արագությամբ դասավորեց բոլորին։

— Պատրա՜ստ...— լսվեց հրամանը։

Հրապարակի լռության մեջ քառասուն պիոներական ձեռք վեր բարձրացրին քառասուն մոդել։

— Բաց թողնե՛լ...

Մոդելները դեպի վեր թռան։ Դրանցից մի քանիսը իսկույն դեպի ցած թեքվեցին, մի քանիսը հասան տրիբունին, իսկ Արամի մոդելը, չգիտես ինչու ետ թեքվեց ու քթով զարկվելով շատրվանին, ընկավ ավազանի մեջ։

— Գնաց լողանալու,— շշուկով սրամտեց մեկը։

Արամի աչքերում արցունք երևաց։

Մոդելներից միայն մեկն էր, որ դեռ թռչում էր։ Նա առաջին պտույտը կատարեց հինգ մետր բարձրության վրա, ապա բարձրությունն ավելացավ։ Այժմ նա առնվազն երեսուն մետր բարձրության վրա էր։ Հանկարծ մոդելից մի փոքրիկ սև կետ անջատվեց։ Մոդելը թեթևանալով ավելի բարձրացավ, անցավ տրիբունի վրայով ու անհայտացավ աչքից։ Իսկ մոդելից պոկված կետը տաս մետր բարձրության վրա բացվեց ու դարձավ մի փոքրիկ սպիտակ պարաշյուտ, որ մեղմ քամուց քշվելով տարվում էր դեպի տրիբունը։ Վերջապես պարաշյուտն իջավ հրապարակում։ Կապիտանը վերցրեց այն ու տրիբունի վրա բարձրանալով, մեկնեց լուսավորության մինիստրին։

Պարաշյուտի մի կողմի վրա Ստալինի նկարն էր, իսկ մյուս կողմում մանրիկ տառերով գրված էր. «Խոստանում ենք սովորել լավ ու գերազանց»։

Մրցանակ շահած մոդելը գտնվեց երեկոյան քաղաքի ծայրին, մեծ գործարանի բակում։

Դա Վարդանի պատրաստածն էր։

# ՏԱՏԻԿՆ ՈՒ ԹՈՌՆԻԿԸ

*ՄՆԱՑԱԿԱՆ ԹԱՐՅԱՆ*

*Նկ. Լ. ԽԱՆԱՄԻՐՅԱՆԻ*

Այսօր Հասմիկը դարձավ պիոներ,
Մետաքսյա կարմիր վզկապ է կապել,
Ուրախ աղմուկով ներս մտավ նա տուն,
Կանգնեց, տատիկին պատվի է բռնում.
— Բարև, տատի՛կ ջան, պիոներ եմ ես,
Վզկապ էլ ունեմ, հապա նայիր, տես:



Տատը՝ ակնոցը ուղղեց իր աչքին.
— Ապրես, Հասմի՛կ ջան, ա՛յ, ինչ եմ ասե՞լ:
Վզկապով ինչքա՞ն սիրուն ես դարձել:
— Տատի՛կ, — կատակեց ժիր Հասմիկը մեր, —
Իսկ դու եղե՞լ ես կյանքում պիոներ...
— Է՛հ, որդի՛, — տնքաց տատը վշտով խոր, —
Մեր օրոք ի՞նչ կար... ուրիշ է այսօր...

— Լավ, մի՛ վշտանա, եկ այսպես անենք,
Դիմում տուր, տատի՛կ, քեզ էլ կընդունենք.
Բայց ոչ պիոներ, կընդունենք միայն
Մեր ջոկխորհրդի պատվավոր անդամ:
Խորհուրդը քեզ էլ ալ վզկապ կտա՝
Քեզ էլ կկանչի, երբ նիստ ունենա...
— Շատ լավ, Հասմի՛կ ջան, թող լինի այդպես,



Դիմում կգրեմ, համաձայն եմ ես:
Ասաց ու թոռան վզկապը շոյեց,
Գրկելով նրան մի լավ համբուրեց:

# ՈՒՇ ԱՇՈՒՆ

*Ռ. ԿԱՍՊՅԱՆ*

Այգուց վերջին
Միրգն էլ տարանք,
Մեկ էլ գարնանն
Այգի կգանք:

Այգին այնքան
Միրգ է տվել,
Ես նրանցից
Ո՞րը թվեմ:

Ինչքան կուզի
Թող ցուրտը գա,
Մառանները
Լիքն են հիմա:

Այգու մոտի
Փոքրիկ գետը
Տերևներ է
Տանում հետը:

Սարի վրա
Բարակ մշուշ,
Եվ շնչում է
Աշունը ուշ:



# ՔԱՐՔԱՐՈՏ ԲԼՈՒՐՆԵՐԻ ԼԱՆՋԵՐԻՆ

Վ. ՏԱԼՅԱՆ

Ֆոտո Հ. ՀԵՔԵՔՅԱՆԻ

## ԾԵՐՈՒՆԻ ՋՐՎՈՐԻ ՀՈՒՇԵՐԸ

Գյուղի գլխավոր փողոցով դպրոց են գնում մի խումբ պիոներներ։ Խաչաձևվող փողոցներից գալիս են երեխաների նորանոր խմբեր և տների առջևով հոսող անհանգիստ առուների նման խառնվում են իրար և աղմուկով սլանում առաջ։ Հրճվագին հայացքներով նրանց ուղեկցում են ծորակներից ջուր վերցնող կանայք։ Արգնու վճիտ ջուրը թափվում է առուն և երեխաների ծիծաղի պես կարկաչում։

Հենց այդ պատանիներին է, որ քանի՜-քանի՜ անգամ գյուղի անցյալի մասին պատմել է ութսունամյա ջրվոր Խաչատուր բիձան. նրա պատմածը լսել են մանկատան աղջիկները, երբ ամռանը ջոկատ առ ջոկատ գնացել են խոտհնձին, իսկ հետո էլ բերքահավաքին օգնելու։

Գյուղի շրջակայքի քարքարոտ բլուրների լանջերին նստոտած, նրանք նայել են այգիների մեջ թաղված կղմինդրածածկ տներին, լայն և ուղիղ փողոցներին ու զարմացել, որ ընդամենը մի քանի տարի առաջ այդ բոլորի տեղը չոր ու ցամաք ղռեր են եղել, որ միակ բնակիչներն այդտեղ օձերն ու կարիճներն են եղել, իսկ բույսերը՝ փուշն ու տատասկը։

— Դպրոցի տե՞ղն էլ,— անհամբեր ընդհատել է մեկը։

— Այն այգիների տե՞ղն էլ,— զարմացել է մյուսը։

— Հենց իմ տան տեղն էլ,— հաստատել է Խաչատուր բիձան, բահն ուսել ու գնացել շարունակելու իր սիրած գործը, ջուր տալու գյուղի այգիներին ու արտերին։

Տարիներ առաջ էր, երբ Բերիայի շրջանի Դավիթաշեն գյուղի, այժմ երկու հարյուրից ավելի տուն և հազարից ավելի բնակիչ ունեցող գյուղի տեղը մինչև անգամ թռչուն չկար։

— Բա ի՞նչ եք կարծում, —ասել է մի օր այգեգործ Բաղդասարը.— Մեր գյուղը ձեզանից մեկ-երկու տարով հազիվ մեծ լինի։ Հիմա էլ որ փորում ես, մի բուռ հող է դուրս գալիս, տասը բուռ՝ քար. բայց մարդու աշխատանքն ու ջուրը տեսեք, թե ի՜նչ են դարձրել ամայի ղռերը։

## ԾԱՂԿՈՒՄ Է ՆՈՐ ԳՅՈՒՂԸ

— Ջո՛ւր տալ այս անապատին և գյուղեր հիմնել,— որոշեց Սովետական կառավարությունը,— քարքարուտներն այգեստաններ պետք է դառնան։

Եվ գարնանը Քանաքեռգէսի ջրամբարից ներքև բացվող ձորը որոտաց ապառաժների պայթյուններից, մարդկանց աղմուկ-աղաղակից։ Դեռ Արաբկիր ավանը չկար, երբ Նոր Դալմայի մայր առուն երկու հարյուր մետրանոց խողովակներով հորդեց ձորն ի վար, ապա դիմացի լանջով մղվեց դեպի վեր և գնաց ոռոգելու ապագա գյուղի հողերը։

Միաժամանակ Ապարանից մարդիկ եկան Դալմայի ղռերը և սկսեցին պայքարը բնության դեմ։

Այդ գարնանը տասնյակ տների հիմքեր դրվեցին։ Մի քանի օր հետո բարձրացան առաջին հարկերը։ Պետությունն ամեն ինչով օգնեց շինարարներին։ Իսկ նրանք տների շրջապատը քարերից մաքրեցին, հողը փխրացրին, պարարտանյութ բերեցին, պա-

*բարտացրին և ծիրանի, կեռասի, փշատի ու դեղձի ծառեր տնկեցին։ Աշխատանքը ծանր էր, բայց չէին հուսահատվում։*

*— Դեմեր և Ջաղացի դուռ հանդերից հազար խորանարդ մետր քար հավաքեցինք, որ երբեք հեկտար արտ դարձավ,—կոլեկտիվի հերոսական աշխատանքը հիշելով պատմում է բրիգադիր Եղիշը։*

*Դրանից հետո, ամեն տարի, մի քանի ընտանիք տեղափոխվեց Դավիթաշեն. իսկ այս տարի 30 ընտանիք նոր տներ են կառուցում։*

*Այսպես օրեցօր մեծանում ու բազմամարդ է դառնում տասներեք տարեկան գյուղը։ Դեպի բլրի գագաթը բարձրացողը և այնտեղից երկու լանջերին նայողը կտեսնի նոր ծածկված շենքեր, բարձրացող պատերի դեռևս խոնավ շաղախներ... Մինչև կալերը, առավոտից երեկո, կառուցման աղմուկ է։ Իսկ կոլխոզի քարհանքներում ամբողջ օրը մռնչում է էքսկավատորը, դղրդում է հողափոր մեքենան, խիճարների բլուրների վրայով գնում ու գալիս են ինքնաթափ ավտոները։*

*— Մենք շատ բանով ենք օգնում նոր տըներ կառուցողներին,— ասում է գյուղի Գրիգոր Հարությունյանի անվան կոլխոզի նախագահ Արամ Հարությունյանը.— քար ենք տալիս, ավազ ենք փոխադրում...*

*Այսպես կառուցում են առանձին ընտանիքներ, կառուցում է շինարարական բրիգադան, կառուցում է ամբողջ գյուղը. արդեն կառուցել են գինեգործարան, դարբնոց, ալրաղաց, թռչնաբուծական ֆերմայի շենք...*

*Ավտոմեքենան մեղմ օրորվելով սլանում է դեպի հարևան Անաստասավան գյուղը։ Շոֆեր Ժորան գլխով ցույց է տալիս աջ ու ձախ և հպարտությամբ ասում.*

*— Այս ճանապարհը մեր կոլխոզն է կառուցել, երեք կիլոմետր է։ Մի քիչ էլ որ բարեկարգենք՝ խճուղուց պակաս չի լինի։ Մի հինգ տարի հետո հիանալի ճանապարհ կդառնա...*

*Ուղևորը նայում է ճանապարհի երկու կողմով հոսող առուներին, դեռևս նազուկ հացենիների շարքերին և համոզվում, որ Դավիթաշենի բնակիչները լավ կառուցողներ են։*

*Գյուղսովետի նախագահ Եղիազար Ոսկանյանը հաճույքով է ցույց տալիս այն երկու փողոցը, որոնք բարեկարգվել են վերջին տարում։ Մաքրվել են առուները, վեց հազար պտղատու և դեկորատիվ ծառեր են տնկվել։*

*Նոր գոմի շինարարության վայրում աշխույժ եռուզեռ է։ Ավազ անողները պատերն են ավաղում, որմնադիրները գոմի լայն բակի ցանկապատն են շարում. իսկ անասնաբուծական ֆերմայի վարիչ Բագրատ Եփրեմյանն ու անվանի կթվորուհի Նուբար Կիրակոսյանը ուշադրությամբ զննում են էլեկտրակիթի և ավտոջրիչների սարքերը։ Կոլխոզի հովիվները ժպտալով փորձում են էլեկտրական խուզման մեքենաները։*

*Նոր գոմում կտեղավորվեն 200 գլուխ խոշոր եղջերավոր անասուն և 500 գլուխ ոչ-*



Դավիթաշեն գյուղի ընդհանուր տեսարանը։



Միջնակարգ դպրոցի շենքը։

խար։ Այդքան անասունին շատ էլ կեր է հարկավոր։ Դրա համար էլ նոր գոմի կողքին սիլոսի նոր աշտարակ են կառուցել, որտեղ 150 հազար կիլոգրամ հյութալի կեր է պահվելու։

## ԱՌԱՏՈՒԹՅՈՒՆ ՍՏԵՂԾՈՂՆԵՐԸ

Ջուրը կենդանություն բերեց գյուղին, դաշտերին, այգիներին։ Հատուկ մի առու կառուցվեց տնամերձ այգիներն ու բանջարանոցները ջրելու համար։ Մարդիկ ջուրն օգտագործեցին այնպես, որ այդ քարքարոտներում այժմ աճում է մի քանի տեսակ խաղող, «Եղվարդի—4» հայտնի ցորենը, խոշոր ու մսալից պոմիդորը, ձմերուկը և մրգերի բազմաթիվ տեսակներ։

Բրիգադիր Բագրատ Պողոսյանը քմծիծաղով է հիշում հեկտարից չորս ցենտներ ցորեն ստանալը 1949 թվականին։ Նրա չորրորդ բրիգադան Դեմեր հողամասի մեկ հեկտարից այս տարի 22 ցենտներ ցորեն է ստացել, եղել է հողամաս, որ նույնիսկ 40 ցենտներ է տվել։ Բարձրացել է նաև խաղողի բերքատվությունը, անասունների կաթնատվությունը...

— Ինչպե՞ս կարելի է համեմատել...— մատյանը թերթելով գոհ և ուրախ ասում է հաշվապահ Հայկ Պետրոսյանը.— երեք տարի առաջ մեկ կովը 390 լիտր կաթ է տվել, իսկ այս տարի ամեն մի կովը 2000 լիտրի կըհասցնի։

Տարիներ առաջ այստեղ չերամապահություն էլ չըկար. բայց երբ թթաստաններն ընդարձակվեցին, առաջներում միայն ցորեն ու կարտոֆիլ աճեցնող մարդիկ սովորեցին նաև մետաքս տալ երկրին։ Իսկ թռչնաբուծական ֆերմայում, ամեն առավոտ 600 հավ ու ճուտ իրենց կչկչոցով ու կանչով աշխուժացնում են շրջապատը։

## ԲԱՐԵԽԻՂՃ ԱՇԽԱՏԱՆՔԻ ԱՐԴՅՈՒՆՔԸ

Հաշվապահի մատներն այսօր առանձին ուժով են խաղում հաշվիչի հատիկների հետ։ Եվ երբ նա իրար ետևից շարում է ռուբլիներն ու կոպեկները, գլուխը բարձրացնում է ու նայում ժպտացող նախագահին։

— Ընկե՛ր Արամ, միլիոնատեր ենք դառնում, հա՞...

— Այո, քիչ բան է մնացել, Հա՛յկ,—հաստատում է կոլխոզի նախագահը։

Հավաքված կոլխոզնիկները հետաքրքրվում են, թե ինչպես է աճել կոլխոզի եկամուտը։

— Սա 1949 թվականը,— հաճույքով պատասխանում է հաշվապահը.— 270 հազար ռուբլի, չէ՞։

— Հա՜,— ձայն է տալիս մեկը։

— Անցյալ տարի՝ 811 հազար ռուբլի։

— Լա՜վ է գնում,— ձայն է տալիս մի ուրիշը։

— Իսկ այս տարի մեկ միլիոն և... հարյուր հազար,— ձեռքի ամբողջ ափով հաշվիչը չխկացնելով հաշիվը փակում է հաշվապահը։

Բոլորը գոհ նայում են նրան, ապա միմյանց։ Տասնապատիկ անգամ ավելացել է նաև ամեն մի կոլխոզնիկի եկամուտը...

Ամեն երեկո մեղմ աղմուկով լցվում է գրադարան-ընթերցարանը։ Ութ հազար գիրք ունեցող գրադարանի բաժանորդ են շատերը։ Գալիս են գիրք վերցնելու, ամսագրեր

կարդալու, հետաքրքիր զրույց կամ դասախոսություն լսելու։ Կոլխոզնիկներից ոմանք էլ գնում են արդյունաբերական ապրանքների խանութ՝ կտորեղեն կամ այլ ապրանքներ գնելու։

## ՆԱԽԱԳԱՀ ԱՐԱՄԻ ԾՐԱԳԻՐԸ

Ֆերմաներից վերադառնալիս բլրի բարձունքի քարերի վրա նստել են՝ կոլխոզի նախագահը, գյուղսովետի նախագահը, մանկատան դիրեկտոր Ասքանազ Խաչատրյանը և քաղաքից հյուր եկած մի երիտասարդ։ Գյուղի լույսերին ու ճանապարհներին լուսարձակներով ասես խաղացող ավտոներին նայելով, նրանք երազում են։

— Մեծանում է Դավիթաշենը,— ասում է Եղիազարը։

— Այն էլ ինչպե՜ս,— մտազբաղ շշնջում է Արամը։

— Շուտով նոր կամուրջն էլ կկառուցեն ու մեր գյուղը կմիանա Երևանին,— եռանդուն շարժումով իր ասածն ընդգծում է Ասքանազը.— նոր շենքեր են պետք, նոր ճանապարհներ, էլեկտրականության նոր գիծ...

Արամը դառնալով քաղաքից եկած հյուրին, բացատրում է.

— Խաղողի այգիների տարածությունը շատ է լայնանալու։ Ինչքան քարքարուտ կա, խաղող կտա։ Հիմա Բերիայում և Երևանում չորս խանութ ունենք, որ միրգ ու կաթնամթերք են ծախում. այն ժամանակ էլի պետք է բաց անենք։ Հետո, մինչև հիմա մեր դաշտերում կոմբայն չի կարողացել աշխատել, մյուս տարի 60 հեկտար ցանք կոմբայնով ենք հնձելու, ամբողջ ցանքն էլ շարքացանով ենք կատարելու...

— Հա՜, շատ աշխատանք կա...

—Գոմի շինարարությունն ու սարքավորումը ավարտենք թե չէ, հացահատիկի պահեստներ ենք կառուցելու, մի լավ խոզանոց,— շարունակում է Արամը։

Խաչատրյանը ծիծաղում է։

— Այո, մի գեղեցիկ ու լուսավոր խոզանոց, ի՞նչ կա որ... Բա մեր հարյուրից ավելի ճարպագնդերին հո հին, սմքած գոմում չե՞նք թողնելու... Հարկավոր է մտածել նաև նոր մեղվանոցի մասին, թե չէ այս տարի 70 փեթակ է, իսկ մյուս տարի 140 կդառնա։

— Մյուս տարի մանկամսուրի շենք էլ պետք է կառուցենք, բաղնիքի շենք,— նորից ընդհատում է գյուղսովետի նախագահը։

Արամը շարունակում է ոգևորված պատմել, թե ինչպես գոմում անասունների բաղնիք կկառուցեն՝ ցնցուղներով և այլ հարմարություններով, կեր եփելու կաթսաներ։

— Լավ գործ է շերամապահությունը։ Մեզ մոտ թութն էլ լավ է աճում։ Շերամապահությունը զարգացնելու համար տնկարան ունենք, որտեղ 30 հազար տնկի կա. դրանց մեծ մասը գարնանը կտեղափոխենք թթաստանները...

— Սպորտ-հրապարակը բարեկարգեցինք, իսկ կուլտուրայի և հանգստի պարկի տեղն այնպես էլ մնաց,— հիշեցնում է Եղիազար Ոսկանյանը.—գարնանը պետք է կարգի բերել։



Նորակառույց գոմը և սիլոսի աշտարակը։

— Էլեկտրական կալսում, նոր ճանապարհներ...— վեր կենալով ասում է Խաչատրյանը։— Պետք է ավարտենք նաև ուսուցիչների բնակելի շենքը։

Վեր են կենում նաև մյուսները։

Իջնում են նրանք գյուղի գլխավոր փողոցով դեպի բլրի ստորոտը և ամեն տնից լսում ուրախ կյանքի երգը, ռադիո-ընդունիչների ու բարձրախոսների ձայնը։

Փողոցներում դեռ շատ մարդ կա։ Նրանք կինոնկար դիտելուց են վերադառնում։ Դպրոցի շրջակայքում դեռ հնչում է գիշերային դպրոցում սովորող երիտասարդների ծիծաղը, ուրախ կանչերը։ Նրանց ասես արձագանքում են Երևանի գործարանների շչակները...

# ՏԱՐԻՆԵՐ ԱՌԱՋ

Մ. ՄԱԴԱԹՅԱՆ

Նկ. Մ. ՍԵԴՐԱԿՅԱՆԻ

Ես բնիկ երևանցի եմ և լավ հիշում եմ ոչ միայն Հոկտեմբերյան Մեծ ռևոլուցիայի օրերի, այլ նաև 1905 թվականի հին Երևանը։

Դա մի ցեխածածկ, պարսկական տիպի, փոքրիկ քաղաք էր. չնայած ռուսական ցարերի տիրապետության երկար տարիներին, չէր փոխել իր հին դեմքը։ Լավ հիշում եմ Երևանի բոլոր վայրերը. նեղ ու ծուռտիկ փողոցները՝ իրենց միհարկանի հողաշեն տնակներով։

Սաղովյա փողոցում գտնվող մեր տնից անցնում էինք այն ժամանակվա նեղ, բայց համեմատաբար ուղիղ Արմյանսկայա փողոցը։ Նա սկսվում էր ներկայիս Լենինի անվան պողոտայից մի փոքր ցած և վերջանում էր Սվերդլովի փողոցի մոտ։ Արմյանսկայա փողոցը գտնվում էր Ստալինի անվան պողոտայի տեղում, որի լայնությունը հիմա 40 մետր է։

Անընդհատ իջնելով դեպի ցած, մենք հասնում էինք Հրազդանի գեղատեսիլ հովտին։ Ահա, հենց այստեղ, Հրազդանի հովտում էր գտնվում հին Երևանի ամբողջ արդյունաբերությունը։ Երեք «դաբախանա», որտեղ մշակում էին քաղաքում մորթված կենդանիների կաշիները։ Դաբախանաներում ոչ մի մեքենա չկար և ձեռքի աշխատանքով էին կատարվում կաշվի մշակության բոլոր պրոցեսները։ Գետի ափին, մի փոքր ավելի ցած գտնվում էր քաղաքի սպանդանոցը։ Այդտեղ օրեկան ձեռքով մորթում էին 10—20 կենդանի։ Հրազդանի հին կամուրջի մոտ էին գտնվում ջրաղացները և «դինգերը»։ Դինգերը բրնձի կալսումից ստացված չալթուկը կեղևահան էին անում և բրինձ ստանում։ Թե ջրաղացներում և թե դինգերում աշխատում էին գիշեր ու ցերեկ, գիշերները նավթի, իսկ երբեմն ձեթի շարժական ճրագների լույսի տակ։ Զափազանց փոքր էին այս «գործարանները». նրանցից յուրաքանչյուրում աշխատում էր միայն մի բանվոր, իսկ ծանր աշխատանքների ժամանակ նրան օգնում էին այն գյուղացիները, որոնք ցորեն էին բերել աղալու, կամ չալթուկ՝ ծեծելու։

Ջրաղացների և դինգերի դռներին օրերով որոճում էին եզներ, գոմեշներ, ավանակներ, ձիեր, ուղտեր։ Նրանց տերերը օրերով սպասում էին, թե երբ իրենց հերթը կհասնի, որպեսզի մի քանի փութ հացահատիկ աղան, կամ չալթուկ ծեծեն և վերադառնան տուն։

Այս ջրաղացներից և դինգերից մի քիչ վերև, այնտեղ, որտեղ ներկայումս երկրորդ Երգէսի շենքն է, գտնվում էր Երևանի հին խղճուկ էլեկտրակայանը, որը ուներ մի քանի հարյուր կիլովատ կարողություն։ Այստեղ էր նաև Երևանի գարեջրի փոքրիկ գործարանը։ Դա, ինչպես և մյուս գործարանը, ավելի շուտ արհեստանոց էր, որտեղ աշխատում էին 3—10 բանվոր։

Երևանում կային կոնյակի երկու փոքրիկ





գործարան, մեխանիկական արհեստանոց, էլեկտրական ալրաղաց և մի փոքրիկ տպարան։ Սա այնքան տառ ուներ, որ հազիվ էր բավարարում «Երևանսկիե օբյավլենիյա» շաբաթաթերթի տպագրության համար։ Շաբաթաթերթը լույս էր տեսնում մեկ էջը ռուսերեն, մյուսը՝ հայերեն։ Նրա ծավալը «Պիոներ կանչի» կեսից էլ փոքրիկ էր։ Այդ տպարանը գտնվում էր «Աստաֆյան» (այժմ Աբովյանի) փողոցի ներքևի մի փոքրիկ խանութում։ Ներկայիս Ալավերդյան փողոցում կոնսերվի երկու փոքրիկ «գործարաններ» կային, ուր միայն մրգի կոմպոտ էին պատրաստում։ Նրանք աշխատում էին միայն ամռան ամիսներին, այն էլ ընդմիջումներով։

Հիշում եմ, որ սրանց պատրաստած պահածոների վրա անգամ չէր գրվում, թե տուփի մեջ որ պտուղի կոմպոտն է։ Սրանց բերանները ոչ թե հերմետիկ փակվում էին ինչպես հիմա, այլ վարպետները մեկ առ մեկ զոդում էին թիթեղով։ Եթե կոմպոտը դեղձի էր, ապա նրա կափարիչի վրա կաթեցնում էին մեկ կաթիլ լհեմ (զոդանյութ), եթե ծիրանի էր՝ երկու կաթիլ, եթե սալորի էր՝ երեք կաթիլ և այլն։ Այս բոլորը պետք է գնորդը իմանար, որպեսզի ցանկացած կոմպոտը գներ։

Քաղաքն ուներ ձիաքարշ՝ կոնկա, որն աշխատում էր ձիերի ուժով և նախկին «Ղանթար» կոչվող կեղտոտ շուկայից (Կիրովի անվան մանկական պարկի տեղը) Աստաֆյան փողոցով բարձրանում էր վերև։ Բարձրանալիս կոնկայի վագոնին լծում էին լրացուցիչ երկու ձի։ Գծի ծայրին, ձիերն արձակում էին և լծում վագոնի մյուս կողմից։ Կոնկայի մյուս գիծը նույն Ղանթարից գնում էր մինչև կայարան։ Սա մի գծանի էր և վագոնների երթևեկությունը կարգավորելու համար կես ճանապարհին մի կիսակայարան էին սարքել։ Այստեղ գծերը երկու զույգ էին դառնում։ Եթե վագոններից մեկը շուտ էր հասնում կիսակայարան, իսկ մյուսն ուշանում էր, ճամփորդները ժամերով սպասում էին հանդիպակաց վագոնին։

Երևանի կոնկան ուներ ընդամենը չորս ծանր ու անճոռնի վագոն։ Նրանք բոլոր կողմերից բաց էին նաև ամռանը. շարժվում էին չափազանց դանդաղ։ Եթե մարդ մի փոքր արագ քայլեր, կարող էր հասնել և անցնել կոնկայի վագոնից։

— Խաբարդա՜...— բղավում էր վագոնավարը, երկար մտրակը ճայթում էր օդում և վագոնը մեծ դղրդյունով շարժվում։ Երևանցիները չէին սիրում կոնկան և չէին օգտվում նրանից։ Նրա մեջ սովորաբար նստում էին 3—5 մարդ, մնացած տեղերը դատարկ էին մնում։

Առաջին ավտոմեքենան, որ մուտք գործեց Երևան, դարձյալ մի անշնորհք բան էր։ Այդ մեքենան Ֆրանսիայից բերել տվեցին էջմիածնի մի խումբ հարուստ բամբակագործներ և բանեցնում էին Երևան—էջմիածին ճանապարհի վրա։ Բայց ճանապարհին եղած կամուրջներն այնքան թույլ էին, որ չէին դիմանա նրա ծանրությանը։ Մի տարի տևեց, մինչև որ այդ խճուղու բոլոր կամուրջները փոխվեցին և սկսվեց այդ մեքենայի շահագործումը. բայց հետո նրա մոտորը հանեցին և օգտագործեցին բամբակ զտելու համար։

Հիշում եմ այն ժամանակը, երբ Երևանը էլեկտրականություն չուներ։ Քաղաքի մեծ փողոցներից մի քանիսը (այժմյան Աբովյանի, Գնունու, Սպանդարյանի, Սվերդլովի և Ամիրյանի), այն էլ ոչ ամբողջ երկարությամբ, լուսավորվում էին գազի լամպերով,



երկրորդական փողոցները՝ նավթի ճրագներով, որոնք դրված էին մեկը մյուսից զգալի հեռավորության վրա, գլխավորապես հարուստների կամ մեծ պաշտոնյաների դռների առջև։ Բայց դրանք համարյա թե չէին լուսավորում փողոցները։ Նեղ փողոցների մեծ մասը լուսավորություն բոլորովին չուներ։

Երևանը ջրմուղ չուներ։ Ջրկիրները երկու անիվանի տակառներին լծում էին մի-մի նիհար ձի և կրիայի քայլերով շարժվելով ջուր էին կրում քաղաքի մոտիկ աղբյուրներից ու վաճառում էին քաղաքացիներին։ Ջուրը մեծ մասամբ «Դամըր բուլաղ» կոչվող աղբյուրից էին բերում, որը գտնվում էր ներկայիս կրկեսի մոտ։ Այստեղ քաղաքի ծայրն էր և միշտ ջրկիրների հերթ էր լինում. բայց այդ ջուրը կեղտոտ էր լինում։ Դրա համար էլ ամեն մի տան բակում դրված էին ջուր քամելու քարեր։ Քամված ջուրը գործածում էին խմելու, թեյ, ճաշ եփելու համար, իսկ ամանները կամ շորերը լվանում էին առվի ջրով։

Երևանն ուներ նաև մի քանի փոքրիկ, պարսկական ձևի կեղտոտ բաղնիքներ։

Այս էր Երևանի նախկին արտադրական կարողությունը։

Հին Երևանում դպրոցներ էլ քիչ կային։ Միայն Սովետական իշխանությունը Երևանի համար ստեղծեց ծաղկելու, զարգանալու անսահման հնարավորություններ։

## ՀՐԱՊԱՐԱԿ ՈՒՆԵՑԱՆՔ

ՎԻԿՏՈՐ ՎԱՐԴԱՆՅԱՆ

Դպրոցին կից մենք այս տարի
Մեր ուժերով համատեղ,
Պատրաստեցինք հրաշալի
Հրապարակ մի շքեղ։
Որը տանից բերեց քլունգ,
Որը սղոց, բահ, ուրագ,
Գործարանն էլ տվեց «կռունկ»,
Ավտո, տախտակ, պատգարակ։
Մեկը լինգով ուժը լարած
Քարն էր շարժում իր տեղից,
Մեկ ուրիշը դույլը առած՝
Ջուր էր բերում աղբյուրից։
Մի երրորդը ուրախ կանչով
Կիր, ավազ էր շաղախում,
Մի չորրորդն էլ նոր ծեփիչով
Ցանկապատն էր սվաղում։
Հողափորը, մեծ շերեփով
Թումբն էր քանդում ու հարթում,
Իսկ շոֆերն էլ «ԶԻՍ» ավտոյով
Հողն էր տանում ու թափում։
Էլ ո՞վ ասես, որ չէր օգնում
Մեր ձեռնարկած նոր գործին.
Դիրեկտորն էր ոգևորում՝
Ամեն մեկիս առանձին։
Ա՜յ, թե ինչպես աշխատեցինք,
Նպատակին մեր հասանք,
Մեր ուժերը մենք լարեցինք
Հրապարակ ունեցանք։

# ԿԱՐՄԻՐ ԾԱՂԻԿՆԵՐ

ՉԱՆԴՐ — Նկ. Տ. ԹՈՔՄԱՃՅԱՆԻ

(Հնդիկ գրող)



Ես նրան շարունակ տեսնում էի մեր գործարանի մոտերքում։ Դա գրեթե տասներկու տարեկան նիհար տղա էր՝ թուխ մազերով և ծաղկատար դեմքով։ Ամեն օր անց ու դարձ էր անում մեր գործարանի առաջ։ Նրան տեսնում էի և՛ առավոտյան՝ ստուգման ժամանակ, և՛ կեսօրին, երբ նախաճաշում էինք, և թե երեկոյան, երբ արդեն տուն էինք գնում։ Նա մեզ մոտ աշխատանք չէր որոնում. կույր էր։ Իսկ մեր երկրում նույնիսկ տեսունակ մարդիկ անկարող են աշխատանք գտնել։ Կույրերը միայն մի ելք ունեն. մուրացկանություն անել։ Բայց այս պատանին ճարպիկն էր։ Նրան երբեք չեմ տեսել ողորմություն խնդրելիս։ Բարակ, բայց հաճելի ու երաժշտական ձայն ուներ։ Միշտ փոքրիկ երգարաններ էր բերում և գործարանի առաջ ծախում՝ հատը մի աննայով*)։ Ծախելուց հետո երգում էր կինոնկարներից սովորած նոր երգեր, որ այնքան դուր էին գալիս բանվորներին։



Ես սիրում եմ կինո. իսկ ո՞վ չի սիրում։ Առավոտից իրիկուն աշխատում ես, ամբողջ մարմինդ ցավում է, և ինչքան էլ վճարեն, միևնույն է՝ չի բավականացնի, որ ծայրը ծայրին հասցնես։ Այդ պատճառով էլ շատերը խմում են «թադի»**), կամ գնում են կինո։ Ես ոչ մի կաթիլ «թադի» չեմ խմում, բայց կինո գնում եմ։ Պետք է խոստովանել, որ կինոն մեծ բավականություն է, մանավանդ, երբ արժի ընդամենը մեկ աննա...

Սակայն այնպես է պատահում, որ չորս աննա էլ չես ունենում։ Նման դեպքերում կույր տղայից գրքույկներ էինք գնում, կարդում, թե ինչ է գրված կինոյի մասին, երգեր էինք լսում, իսկ հետո այդ նոր երգերը երգում կիսաձայն։ Վատ չէր, որ այդ ամենը արժեր ընդամենը մեկ աննա։

Մեր կյանքում այնքան շատ դատարկություն կա, որ մենք աչքերս չռած՝ նայում ենք մեր դեմ փայլող լույսի ամեն մի ճառագայթի։ Եվ շատ կուզենայինք իմանալ, թե երբևէ կկարողանա՞նք բռնել հույսի այդ շողը։ Եվ արդյոք այդ շողը կփայլի՞ մի օր մեր հարկի տակ։

Այսպես էինք խորհրդածում աշխատանքի ժամանակ։ Մեզ համար գեղեցիկ երազներ էինք հյուսում. իսկ հետո գալիս էր վարպետը և գոռգոռում։ Եվ մեր երազները, գեղեցիկ երազները իսկույն թռչում էին հեռու, չքանում։

Այդ պատճառով էլ մի անգամ գործադուլ արեցինք։ Եկան կարմիր դրոշակավորները։ Նրանք առաջ էլ մի քանի անգամ եկել էին. բայց ես սիրտ չէի անում միանալ նրանց։ Ամբողջ օրը աշխատում էի։ Երեկոյան երբեմն կինո էի գնում, իսկ հետո, տուն վերադառնալիս, մրմնջում կինոնկարից սովորած երգերը։ Մի կտոր չոր հաց ուտելուց հետո, պառկում էի քնելու։ Բայց ահա հացահատիկի գները բարձրացան, իսկ քարածուխ, որ մեզ ամեն օր էր պետք, հիմա արդեն կարելի էր ճարել միայն սև շուկայում։ Եվ ինձ սկսեց թվալ, թե աշխատավարձս չորս անգամ պակասել է։

Ես շարունակ քաղցած էի մնում, երեխա-

* Աննա — մանր դրամի միավոր։

** Թադի — տանը պատրաստած խմիչք։

ներս ցնցոտիների մեջ էին, և նույնիսկ տան վարձ տալու հնարավորություն չունեի։ Արդեն կինո չէի գնում։ Առաջ սովորաբար հին եղանակներ էի մրմնջում, երբեմն էլ հորինում սեփական երգեր։ Սա շատ հաճելի է. բայց հիմա շրթունքներս բոլորովին չորացել էին։

Եվ այսպես, երբ բանվորները գործադուլ արեցին, ես միացա նրանց։ Գործադուլը փափուկ բարձ չէ։ Աշխատանքի վարժված մարդը հաճույք չի գտնի հարկադիր անգործության մեջ։ Գործադուլ՝ նշանակում է դոտիդ ավելի ձգիր։

Մեր գործադուլը շարունակվում էր. դա շատ մեծ գործադուլ էր։ Մի տասնյակ պրովոկատորներից բացի ոչ ոք աշխատանքի չէր գնում։ Ամենուրեք ոստիկաններ էին կանգնած. բայց մենք գործարանի մոտ խռնված, ծուլորեն զրուցում էինք։ Ինչպես միշտ, գալիս էր կույր տղան ու երգում. բայց նա հիմա ոչ մի գրքույկ չէր կարողանում վաճառել։ Նա գործի էր դնում իր հաճելի երաժշտական ձայնի ողջ հմայքը, սակայն ոչ ոք ոչ մի աննա գրպանից չէր հանում։ Չէ՞ որ, եղբայր, մենք գործադուլ էինք հայտարարել, և ով գիտե, թե դա որքան էր տևելու։ Աննան մնում է աննա։ Դրանով կարելի է մի քիչ եգիպտացորեն գնել նախաճաշի և ընթրիքի համար։

Երբեմն ծիծաղս է գալիս, երբ մարդիկ ասում են. «Բանվորները գործադուլ են անում, որովհետև նրանց խաբել են ագիտատորները... Ճիշտ չէ։ Այդ մարդիկ չգիտեն, որ բանվորները գործադուլի ժամանակ ոչ տապակած հավի ճուտեր են ուտում, ոչ էլ փլավ։ Նրանք չոր հաց են ուտում, բռունցքներն են սեղմում և սպառում իրենց սրտի ուժերը։ Ահա թե ինչ է գործադուլը։ Նրանք իրենց աչքով տեսնում են, թե ինչպես են քաղցից մեռնում իրենց երեխաները։ Տեսնում են, թե ինչպես են իրենց կանայք խոտ խաշում, և ատամները սեղմած, գլխիկոր կանգնում են գործարանի դարբասի առաջ։ Թուլությունը, գայթակղությունն ու խաբեությունը նրանց ներս են հրում. բայց նրանք մնում են կանգնած։

Մի անգամ կույր տղան, շատ երգելուց ուժասպառ եղած, հենվեց փոստարկղին։ Զգացի, որ պատրաստ է հեկեկալու։

— Քանի՞ գիրք ես ծախել,— հարցրի։

— Ոչ մի։

— Հիմա այստեղ էլ ոչ ոք չի գնի։

— Ինչո՞ւ։

— Այստեղ գործադուլ է։

Լեզուն չոր շրթունքներին քսելով, նա ասաց.

— Այն օրն էլ, երբ ասում էին, թե անկախություն են ստացել, ես դարձյալ ոչ մի գրքույկ չծախեցի... մարդիկ ուրախությունից պարում էին։

— Իսկ դու ինչո՞ւ չէիր պարում։

— Քաղցած էի։

Ես լռեցի։ Մի փոքր մտածելուց հետո գրպանիցս հանեցի մի աննա և տվի նրան։ Նա վերադարձրեց։

— Կույր եմ, բայց մուրացկան չեմ։ Հայրս աշխատում էր այս գործարանում։ Վարպետի անուշադրության պատճառով մեքենայի տակ մնաց։



Ես նրան ասացի.

— Այստեղ գործադուլ է, ոչ ոք չի հետաքրքրվի կինոնկարների երգերով։ Գնա մի ուրիշ տեղ։

— Է՛հ, ո՞ւր գնամ։ Ուրիշ ճանապարհ չգիտեմ։

— Գնա ամրոցը. այնտեղ հարուստներն են ապրում. այնտեղ կարող ես ծախել գրքույկներդ։ Եկ, եկ գնանք. ես քեզ կուղեկցեմ։

Եվ նրան տարա ամրոց։ Հետևյալ օրը նորից եկավ։

— Նրանք անգլիական ֆիլմեր են դիտում, գրքերս չեն գնում։

Հետո եկան կարմիր դրոշակավորները։ Նրանց հետ շատ գործարանների բանվորներ կային։ Նրանք կոչեր էին բաց թողնում և երգում ռևոլուցիոն երգեր։ Ես նկատեցի կույր տղային, որը դանդաղ գնում էր ամբոխի կողմը։ Քանի դեռ չէր սովորել եղանակը, երգում էր ցածրաձայն, բայց հետո երգեց լիաթոք, և մենք բոլորս ձայնակցեցինք։ Նրա ձայնը տոգորված էր նոր, զարմանալի ուժով։ Բանվորները տղային բարձրացրին իրենց ուսերին և ձեռքը տվին մի կարմիր դրոշ։

— Սա քեռի Ցագլուի տղան է։ Ցագլուուր-Ռախմանը մեր գործարանի բանվորն էր։ Սա քեռի Ցագլուի տղան է։

Ես տեսա, թե երջանկությունը ինչպես լուսավորեց կույր տղայի դեմքը։

— Այդ ինչպե՞ս պատահեց, որ ինձ դրոշակ տվին։ Ախր ես դեռ փոքր եմ։

— Դու նահատակի զավակ ես, քեռի Ցագլուի տղան ես։

— Իսկ ի՞նչ գույնի է դրոշակը,— հարցրեց նա։

— Կարմիր։

— Իսկ ինչի՞ է նման կարմիր գույնը։

— Չես կարող հասկանալ,— ասացի ես, — դու կարմիր գույն չես տեսել. բայց կփորձեմ բացատրել։ Կարմիր գույնը նման է մարդկային սրտի արյանը։ Դա մեր աշխատանքի գույնն է։

Մի փոքր լռելուց հետո, տղան ասաց.

— Դա մեծ երգ էր։ Դուք չգիտե՞ք, կա՞ն էլի այդպիսի երգեր։

Շուրջս նայելով, շշնջացի ականջին.

— Ոչ ոքի չասես. ես էլ եմ երգեր գրում. բայց դրանք այնքան էլ լավը չեն։ Ամաչում եմ ուրիշներին ցույց տալ։

Տղան ասաց.

— Դուք երգեր գրեցեք, իսկ ես կերգեմ։ Եվ կարմիր երգեր գրեցեք, ինչպես այս մեկը, լա՞վ։

Գիշերը ես գրեցի անհարթ, անմշակ մի երգ։ Գրեցի դժվարությամբ, բայց անկեղծ սրտով։ Այդ երգի մեջ ես դրեցի իմ կնոջ կրած ամբողջ տառապանքը, նրա սրտի ողջ կսկիծը, իմ երեխայի քաղցը։ Ծարավով ու քաղցով լեցուն երգս տարա կույր բարեկամիս, իսկ նա այդ երգին հաղորդեց իր խավար աշխարհի ողջ լույսը։ Եվ այն ժամանակ երգը դարձավ թուր։ Երբ տղան երգեց, մարդիկ կյանքի կոչված՝ հուզվեցին մինչև իրենց սրտի խորքը։ Երգը նման էր հարյուրավոր մերկացված թրերի, որ փայլատակում էին գործարանի առաջ։ Ժամապահների դեմքերին մեռելային դժգունություն էր իջել։ Կառավարիչը զորք կանչեց։

Շատ օրեր անցան։ Մեր բոլոր խնայողությունները վերջացան։ Մեր բոլոր հույսերը մեկ-մեկ չքացան։ Մի քանիսը արդեն մտադիր էին վերադառնալ գործարան։ Գործարանատերը ոչ մի զիջում չարեց։ Միջնորդները հալածում էին մեզ։ Հարուստներին պատկանող թերթերը նույնպես պախարակում էին։ Ամեն ոք պատրաստ էր մեզ «խորհուրդ տալու», սակայն ոչ ոք չէր ուզում օգնել։ Մենք մշտական տագնապի մեջ էինք, չտեսնելով և ոչ մի ելք. իսկ այսօր շատերը որոշեցին գնալ աշխատանքի։ Մենք փորձեցինք համոզել նրանց, բայց նրանք չլսեցին։

Չափից դուրս տխուր էի։ Իմ կույր բարեկամը նույնպես իրեն ճնշված էր զգում։ Մենք դանդաղ հեռացանք գործարանից։ Տղան ասաց.

— Վաղը բանվորները կվերադառնա՞ն գործարան։

— Այո,—պատասխանեցի դժկամությամբ։

— Դո՞ւք էլ։

— Ոչ։

— Հապա ի՞նչ եք անելու։

Ես ոչինչ չպատասխանեցի։

Հետևյալ օրը, երբ արևը ծագեց, մենք երկուսս էլ արդեն գործարանի մոտ էինք։ Նրա



ձեռքին դրոշակ կար, իսկ շուրթերին իմ նոր երգն էր հնչում։ Ես երբեք այդքան լավ երգ չէի գրել. և նա էլ երբեք այնքան լավ չէր երգել, ինչպես այսօր։

Ոչ ոք ներս չմտավ։ Ով մոտենում էր, կլանվում էր երգի օվկիանոսով։ Դարբասը կրնկի վրա բաց էր, բայց գործարանը մնում էր դատարկ։ Պրովոկատորները տեսնելով, որ իրադարձությունները իրենց դեմ են ուղղվում, հարձակվեցին մեզ վրա։ Մենք պատասխան տվինք։ Ես տեսա, թե ինչպես կույր տղան վայր ընկավ և ինչպես դրոշը բարձրացրեց բանվորներից մեկը։ Մոտ վազեցի և գրկեցի տղային...

Հիվանդանոցում մի քանի բանվոր հավաքվել էին նրա մահճակալի շուրջը։ Բժիշկն ասաց, որ նա շուտով կմեռնի։

Տղան հարցրեց.

— Ոչ մեկը գործարան չգնա՞ց։

— Ոչ մեկը։

— Ո՞չ մի մարդ,— կրկնեց նա հարցը անհանգստությամբ։

— Ոչ մի մարդ,— հավատացրի նրան։

Թեթևացած շունչ քաշելով, նա կամացուկ ասաց.

— Նրանք ինձ դրոշակ տվին...

Աչքերս արտասուքով լցվեցին։ Հիվանդապահ կինը շոյեց նրա գլուխը։ Տղայի ռունգերը թրթռացին։

— Ո՞ւմ մոտ են ծաղիկները։

Հիվանդապահը ինչ-որ օծանելիք էր վրան ցանել։ Նա ուզեց ինչ-որ բան ասել, բայց ես չթողեցի և մի քանի բառ շշնջացի ընկերոջս ականջին։ Ընկերս դուրս վազեց։

— Ո՞ւմ մոտ են ծաղիկները,— կրկնեց տղան իր հարցը։

— Ծաղիկները խանութում են,— ասացի ես,— հիմա ընկերս կբերի։

Տղան լռեց։ Ընկերս մի քանի ճյուղ ծաղկած հասմիկ բերեց և տվեց ինձ։ Ես ծաղիկները դրեցի իմ կույր բարեկամի փոքրիկ, դողդոջուն ձեռքի մեջ։

Հասմիկի սպիտակ ծաղիկները վառ կերպով փայլում էին նրա դարչնագույն ձեռքին։

— Ի՜նչ լավ ծաղիկներ են, ի՜նչ հիանալի բուրմունք ունեն։ Ի՞նչ գույնի են,— հարցրեց նա ծաղիկները այտին հպելով։

Հանկարծ նրա դեմքը երջանկությունից փայլեց։

— Սրանք կարմի՞ր ծաղիկներ են,—հարցրեց նա։

Հիվանդապահ կինը ուզեց առարկել, բայց ես կանխեցի, ասելով.

— Այո, իմ փոքրի՛կ եղբայր, այդ ծաղիկները կարմիր են, ինչպես արյունը։ Բոլորովին կարմիր են։

Նա նորից հարցրեց.

— Այնպես կարմիր են, ինչպես դրոշա՞կը, ինչպես մարդկային սրտի արյո՞ւնը։

— Այո,— պատասխանեցի ես, կուլ տալով արցունքներս։

— Սրանք շատ գեղեցիկ ծաղիկներ են,— հառաչեց նա բախտավոր։ Այտը մի անգամ էլ հպեց ծաղիկներին և աչքերը փակեց։

Սենյակում ինչ-որ մեկը հեկեկաց, ինչ-որ մեկը բարձրաձայն լաց եղավ, ինչ-որ մեկն էլ լաց եղավ լուռ, ձեռքերով դեմքը ծածկած...

Նա այլևս մեզ հետ չէ։ Այսօր ես այցելեցի նրա գերեզմանը։ Կեղտոտ ու լքված է այդ հողաթումբը։ Եվ ինձ թվաց, թե լսում եմ կույր տղայի ձայնը.

— Իմ մեծ եղբա՛յր, այդ կարմիր ծաղիկները ե՞րբ կբացվեն իմ գերեզմանին։

Եվ ես ասացի նրան.

— Իմ փոքրի՛կ եղբայր, ես այսօր կանեմ քո պատմությունը։ Եվ անպայման նրանց կտամ քո այդ հարցը։

Թարգմ. Գ. ՄԻՔԱՅԵԼՅԱՆ

# ՆՎԵՐԸ

*Նկ. Ս. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ*

Քենուշ մոր նման նորից գիրկդ բաց
Եվ գուրգուրիր մեզ, սիրելի՛ դպրոց,
Քեզնից կմնան հուշեր անմոռաց,
Դու իմ մանկության քաղցր օրորոց:

Ամառը շատ ենք մագլցել լեռներ,
Մթին ձորերն ենք մտել քեզ համար,
Հավաքել միջատ, տերևներ, քարեր,
Խատուտիկ ձկներ, սունկեր անհամար:





Արամը փշոտ ոզնի է բերել,
Վարդուշը համսիկ ու հորոտ-մորոտ,
Ես էլ դաշտային մի մուկ եմ բռնել,
Որ փորփրում է միշտ արտ ու արոտ:

— Իսկ այս նվերն էլ՝ գազանանոցին,—
Վոլոդյան փոքրիկ իր արկղը բացեց.
— Գայլուկ է, գայլո՜ւկ,— մեկտեղ կանչեցին,
Եվ արկղից մի զույգ սև աչք մեզ նայեց:

— Եկեք իմ գրկի կենդանին տեսեք,
Դեղին աղվես է պոչը՝ փնջիկ:
— Մողես եմ բռնել, նայե՛ք, մի նայե՛ք:
— Իսկ իմ արջո՞ւկը, քոթոթը չաղլի՞կ:

Իսկ այս խլշտիկ նապաստակը սև,
Անիկի գրկից ականջները ցից,
Ուզում է ցատկել ոստյունով թեթև...
Բայց հենց մեզ տեսավ, կուչ եկավ վախից:

Ուրախ ու կայտառ, ժիր ու արևառ
Ամենքս մի-մի նվեր մեր ձեռքին,
Սպասում էինք, դեմքներս պայծառ,
Դեռ զանգից առաջ, դպրոցի շեմքին:

*ԺԱՆՆԱ ՆԱԼԲԱՆԴՅԱՆ*
*(Գրիբոեդովի անվան դպրոցի 7-րդ դասարանի աշակերտուհի)*

# ԴԱՇՏԵՐԸ

Չեմ մոռացել դեռ,
Հիշում եմ այնպես՝
Հյուր էի եկել
Ձեր նոր գյուղը ես:
Սիրով շրջեցի
Դաշտերում ձեր լայն
Եվ շատ սիրեցի
Կյանքը գյուղական:
Ձեր աշխատանքը
Առատ դաշտերում
Ինձ այնքա՜ն, այնքա՜ն
Բերկրանք էր բերում:
Կանաչ դաշտի մեջ
Ջրանցքն էր հոսում,
Կարծես թե անվերջ
Իր երգն էր ասում.
Բերքառատ դաշտը
Փռվել էր իմ դեմ...
Այդ բնությունը
Ինչպե՞ս չհիշեմ:
Դաշտի գրկում ձեր
Երգերն էր հնչում,
Կարծես թե ինձ էլ
Ձեզ մոտ էր կանչում:
Ձեր կոլխոզական
Դաշտերը նախշուն
Եվ ձեր երգն ուրախ
Հիշում եմ, հիշում:

*ՆՈՐԻԿ ՄՈՒՇԵՂՅԱՆ*
*(Ռուսթավելու անվան դպրոցի աշակերտ)*

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ՋԵՐՄ ԱՐԵՎԻ ՏԱԿ

## ՄԵՐ ԳՅՈՒՂՈՒՄ

Ես ապրում եմ Նոյեմբերյանի շրջանի Կոթի գյուղում: Մեր գյուղը գտնվում է անտառոտ լեռների գրկում: Գյուղից հրաշալի տեսարաններ են բացվում:

Ես հաճախ եմ մեծերից լսել մեր գյուղի անցյալի մասին և երբ մտքով համեմատում եմ լսածս այսօրվա մեր գյուղի հետ, թվում է, թե ինձ պատմել են մի բոլորովին ուրիշ գյուղի մասին:

Այժմ մեր գյուղում գեղեցիկ, փառաշեն, կղմինդրածածկ տներ են բարձրանում նախկին կիսավեր տնակների փոխարեն:

«Դիմացի կուռ» կոչվող թաղամասից գյուղին է նայում դպրոցի երկհարկանի շենքը: Այդ դպրոցում սովորում, գիտություն են ձեռք բերում գյուղի հարյուրավոր երեխաներ: Ես սովորում եմ այդ դպրոցի 6-րդ դասարանում: Մեր դպրոցում բոլոր հնարավորությունները ստեղծված են լավ սովորելու համար:

Դպրոցական գրադարանից բացի մեր գյուղում կա երկու այլ գրադարան, որտեղից մենք վերցնում ենք ցանկացած գրքերը:

Արդեն մի տարուց ավելի է, ինչ մեր գյուղում վառվում են Իլյիչի լամպերը: Մենք մեր դասերը պատրաստում ենք էլեկտրական պայծառ լույսի տակ: Մեր գյուղում հաճախ ցուցադրվում են հնչյուն կինոֆիլմեր: Մենք արդեն դիտել ենք «Չապաև», «Երիտասարդ գվարդիա», «Ալեքսանդր Մատրոսով», «Պրժևալսկի» և այլ կինոֆիլմեր: Մեր գյուղում կան նաև հիվանդանոց, մանկապարտեզ և մանկամսուր:

Այս բոլորի մասին չէին էլ կարող երազել մեր ծնողները նախկինում: Այս երջանիկ կյանքի համար մենք պարտական ենք սովետական կարգերին: Այդ է պատճառը, որ մենք երեխաներս ամեն ջանք գործ ենք դնում, որպեսզի լավ սովորենք, արժանի դառնանք մեր Հայրենիքին:

*Ա. ՂԱԶԻՆՅԱՆ*

*(Նոյեմբերյանի շրջանի Կոթի գյուղի միջնակարգ դպրոցի 6-րդ «ա» դասարանի աշակերտ)*

## ՀԱՅՐԵՆԻՔՈՒՄ

Մեր ընտանիքը Սովետական Հայաստան է եկել Հունաստանից: Հորս այնտեղ 1942 թվին սպանել են գերմանական ֆաշիստները: Հայրս երկար տարիների կոմունիստ էր, արհեստով ատաղձագործ, իսկ օկուպացիայի տարիներին կռվում էր ֆաշիստների դեմ: Ես այն ժամանակ շատ փոքր էի, բայց հիշում եմ, թե ինչպես նա միշտ խոսում էր Սովետական երկիր գալու մասին: Մայրս էլ է պատմում, թե ինչպես նա փափագում էր գալ Սովետական Հայաստան: Հայրս այդ երջանկությունը չտեսավ: Բայց մենք 1947 թվին եկանք Հայաստան: Սովետական Մեծ Հայրենիքը իր դռները լայն բացեց մեր առջև: Մեր ուրախությունն անսահման էր, երբ մենք ոտք դրինք մեր հարազատ երկրի հողի վրա: Սովետական պետությունը մեզ միջոցներ տրամադրեց և օգնեց տուն կառուցել:

Այդ երջանիկ օրից անցել է մի քանի տարի: Հիմա ես, եղբայրս ու քույրերս սովորում ենք դպրոցում: Մեծ եղբայրս և քույրս աշխատում են մետաքսագործարանում: Չի եղել մի դեպք, որ գործարանի վարչությունը նրա աշխատանքից դժգոհ լինի: Նա միաժամանակ սովորում է բաներիտ դպրոցում: Ես սովորում եմ Բերիայի շրջանի Ստալինի անվան դպրոցի 6-րդ դասարանում: Ես լավ եմ սովորում և դասարանից դասարան փոխադրվել եմ գովասանագրերով: Լավ են սովորում նաև եղբայրներս ու քույրս: Մեծ քույրս նույնպես աշխատում է մետաքսագործարանում:

Մեր 8 անձից բաղկացած ընտանիքը ապրում է լավ պայմաններում: Ունենք հարմար բնակարան, որտեղ մենք ունենք պարապելու բոլոր հնարավորությունները: Մենք բոլորս ձգտում ենք այնպես սովորել, որ հետագայում Հայրենիքի համար դառնանք պիտանի քաղաքացիներ: Մեծ եղբայրս և քույրս ուզում են բժիշկ դառնալ, իսկ ես ուզում եմ գյուղատնտես դառնալ: Ես գիտեմ, որ եթե մենք ֆաշիստական Հունաստանում լինեինք, մեր այդ ցանկությունները իրականացնել չէինք կարողանա: Իսկ այժմ մենք անպայման կհասնենք մեր նպատակին, որովհետև սովետական կարգերը մեզ բոլոր հնարավորությունները տվել են:

*ՔՈԼՍՈՒԶՅԱՆ ՇԱՔԵ*

*(Բերիայի շրջանի Ստալինի անվան դպրոցի աշակերտ)*

## ԿՍՈՎՈՐԵՆՔ ԳԵՐԱԶԱՆՑ

Գեղատեսիլ Նորքի սարոտում, Գետառի ափին բարձրանում է մեր դպրոցի շենքը։ Այստեղ հարյուրավոր երեխաներ են սովորում, գիտելիքներ ձեռք բերում։

Բոլոր հարմարությունները ստեղծված են մեզ համար։ Մենք ունենք հարուստ գրադարան, լավ կահավորված առարկայական կաբինետներ, սպորտ-հրապարակ և դահլիճ։ Ամեն ինչ արված է, որպեսզի մենք լավ սովորենք, դառնանք կոմունիզմ կառուցող քաղաքացիներ։ Այդ գործում ջերմ հոգատարություն են ցուցաբերում մեր սիրելի ուսուցիչները։ Նրանք ջանք չեն խնայում, որպեսզի մենք լավ սովորենք։ Առաջին դասարանից մեզ դաս է տալիս հայոց լեզվի դասատու ընկեր Ս. Մելիքսեթյանը։ Ես այժմ զգում եմ, որ հայոց լեզու եմ սովորել նրա շնորհիվ։ Անսահման ուշադիր են մեր նկատմամբ նաև մյուս ուսուցիչները, որոնց ուշադրությունն ու հոգատարությունը զգում ենք ամեն օր, ամեն ժամ։

Այս բոլոր հնարավորությունները մեզ համար ստեղծել է կոմունիստական պարտիան, սովետական կառավարությունը, մեր Հայրենիքը։

Գերազանց սովորելով մենք մեր պարտքը կկատարենք սիրելի Հայրենիքի հանդեպ։

Ժ. ՓԱՆՈՍՅԱՆ

(Գրիբոյեդովի անվան դպրոցի 5-րդ «բ» դաս. աշակերտ)

# ՎԱՐՊԵՏԻ ՈՒՂԻՆ

Ս. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

### 1.

Ուշ աշնանային մի առավոտ Երևանի Աբովյանի անվան դպրոց էր մտնում մի աշակերտ պիոներական վզկապը վզին, ձեռքին գրքերով լի պայուսակը։ Դպրոցի բակում ուրախ աղմուկով վազվզում էին ու խաղում աշակերտները։ Նրանցից ոչ ոք ուշադրություն չդարձրեց ներս մտնողի վրա։ Չէ՞ որ նա ոչնչով չէր տարբերվում մյուսներից, ո՛չ մի բանով։ Գուցե միայն նրանով, որ մի փոքր գունատ էր և ավելի թուլակազմ։

Նա կանգնած էր մի կողմ՝ անտարբեր շրջապատին։ Նրան չէին հրապուրում ընկերների խաղերը։ Եվ երևի երկար կանգներ այդպես, եթե նրան չմոտենար տղաներից մեկն ու բռնելով նրա թևից քարշ չտար դեպի խաղացողների խումբը.

— Գնանք, Հրանտի՛կ, մինչև զանգը դեռ ժամանակ կա. մենք մի լավ կխաղանք։— Բայց Հրանտիկը, որ երբեք չէր հրաժարվի խաղից, այսօր մերժեց ընկերոջը։ Նա ուրիշ բան էր մտածում։

Նախորդ օրը դպրոցում ելույթ ունեցան մարմնամարզական խմբակի անդամները։ Տղաների ելույթը Հրանտիկի վրա ցնցող տպավորություն թողեց։ Նա չէր էլ կարող երևակայել, որ իրենց դպրոցի տղաները, որոնց հետ ինքը ամեն օր լախտի է խաղում բակում՝ կկարողանան նման վարժություն-




Համամիութենական և միջազգային մրցումներում Շահինյանը ստացել է 27 ոսկե, արծաթե և այլ մեդալներ: ՆԿԱՐՈՒՄ՝ Շահինյանը իր ստացած պարգևների հետ:

Ֆոտո՝ Ա. ՋԱԼԱԼՅԱՆԻ

ներ կատարել։ Երեկվանից նա դեռ ուշքի չէր եկել՝ մտովի պտտվում էր պտտաձողի վրա, մարմնամարզական ցատկումներ ու վարժություններ էր կատարում։ Նրան այնպես էր թվում, թե ինքն այդ բոլորը լավ գիտի, բայց այդ կարծիքը շուտ հերքվեց։

Երեկոյան նա տանը փորձեց մի քանի վարժություն կատարել, բայց ապարդյուն։ Նա նույնիսկ ցավեր զգաց կրծքոսկրների միացման տեղում։ Այժմ նա մի բան էր միայն մտածում։ Կկարողանա՞ ինքն էլ սովորել, կամ կընդունե՞ն իրեն մարմնամարզական խմբակը։

Այս մտքերով նա գնաց դեպի սպորտ դահլիճ։



Ֆիզկուլտուրայի դասատու ընկեր Մուրադյանը դեմ չէր։ Նա դասերի ժամանակ արդեն նկատել էր Հրանտի հակումը դեպի սպորտը։

Եվ Հրանտիկն սկսեց դասերից դուրս պարապել մարմնամարզիկների խմբակում։ Նա պարապում էր համառորեն՝ տանը, դպրոցում, գրեթե բոլոր ազատ ժամերին։ Վստահ էր իր վրա. գիտեր, որ հաջողություն կունենա, բայց արի ու տես, որ բոլորը չէին այդպես մտածում։ Շատերը խորհուրդ չէին տալիս նրան։

— Միևնույն է,— ասում էին,— ոչինչ չի դուրս գա։ Մարմնամարզիկը պետք է ուժեղ լինի, առողջ, իսկ դու իսկի մկաններ էլ չունես։

— Ո՞վ չունի,— վրդովվում էր Հրանտիկը,— ա՜յ, տե՛ս...

Եվ նա քշտելով թևքը, ամբողջ ուժով լարում էր մկանները.

— Տե՛ս, ոնց որ քար լինի։

Ի՞նչ խոսք, որ նրա մկանները «քար» չէին և իզուր էին նրա ճիգերը։ Ի՞նչ իմանար Հրանտ Շահինյանը, որ ինքը երբևէ դառնալու է աշխարհի ուժեղագույն մարմնամարզիկներից մեկը և ի՞նչ իմանար, որ դրա համար բոլորովին էլ պետք չէ «քարե» մկաններ ունենալ։

Ամենօրյա պարապմունքներն իրենց զգացնել տվին։ Նա սկսեց հաջողություններ ունենալ։ Ուսուցչի խորհրդով նա մտավ Լուսժողկոմատի կենտրոնական սպորտ-դպրոցը։



1937 թվականին Հրանտ Շահինյանը մեկնեց Մոսկվա՝ դպրոցական մարմնամարզիկների Համամիութենական մրցումներին մասնակցելու։ Ճանապարհին նրա սիրտը թրթռում էր ուրախությունից։ Քի՞չ բան է Համամիութենական մրցումներ ասելը։ Բացի այդ, նա առաջին անգամ էր լինում մեր հայրենիքի մայրաքաղաքում։

Վերադարձավ նա բոլորովին այլ տրամադրությամբ։ Ախր նա որևէ աչքի ընկնող տեղ չգրավեց։ Չնայած դրան, նա չէր հուսահատվում։ «Ոչի՜նչ,— մտածում էր նա,— եկող տարի նորից կգնամ և լավ ելույթ կունենամ»։ Բայց մի տարի հետո նա նորից ձախողվեց։ Շահինյանը մարզվածության հետ միասին դեռ ձեռք չէր բերել ներվերի կոփվածություն, մի բան, որ շատ անհրաժեշտ է սպորտսմենի համար։ Այդ հասկացավ և ինքը՝ Շահինյանը, աշխատեց այդ ուղղությամբ։ Արդյունքն այն եղավ, որ նա հաջորդ տարի Լենինգրադում Համամիութենական մրցություններում 15—16 տարեկան դպրոցականների մեջ գրավեց առաջին տեղը։

Դուք կարծում եք Հրանտ Շահինյանը մոռացե՞լ էր դասերը։ Նա սովորում էր դպրոցում և լավ էր սովորում։ Ճիշտ է, նա սկզբում ետ էր մնում մաթեմատիկայից։ Սակայն տեղի ունեցավ մի զարմանալի բան։ Նա սկսեց մաթեմատիկան ավելի լավ ըմբռնել, ավելի հեշտ. իսկ վերջին դասարաններում արդեն միայն «հինգեր» էր ստանում։ Ոչ մաթեմատիկայի ուսուցիչը և ոչ էլ դասընկերները չգիտեին, թե ինչն է այս զարմանալի փոփոխության պատճառը։ Միայն ահա թե ինչ է պատմում ինքը՝ Հրանտ Շահինյանը.

«Չգիտեմ ինչն էր պատճառը, բայց մի բան լավ գիտեմ, մաթեմատիկան սկսեց ինձ հաջողվել, երբ ես զբաղվեցի մարմնամարզությամբ»։

2.

1941 թվականին Հրանտ Շահինյանն ավարտեց Աբովյանի անվան միջնակարգ դպրոցը։ Նրա առաջ բացվեցին սովորելու նոր հեռանկարներ։ Նա որոշել էր գնալ Պոլիտեխնիկական ինստիտուտ, որոշել էր դառնալ ինժեներ, և արդեն պատրաստվում էր

քննություններ տալ, երբ սկսվեց Հայրենական պատերազմը։ Եվ Հրանտ Շահինյանը սովորեց ուրիշ դպրոցում։ Նա ավարտեց հրամանատարական դպրոցը և մեկնեց ռազմաճակատ։

Լեյտենանտ Հրանտ Շահինյանը վաշտի հրամանատար էր։ Նա իր վաշտով կռվում էր Կովկասի մատույցներում, թույլ չէր տալիս, որպեսզի անարգ թշնամին մտնի Կովկաս։

Այստեղ, ռազմաճակատում նա զգաց, թե ինչքան մեծ օգուտ է տվել իրեն մարմնամարզությունը, սպորտը։ Հայրենիքի պաշտպանության համար հարկավոր է ունենալ առողջ և տոկուն օրգանիզմ, իսկ այդ կարելի է ձեռք բերել սպորտի միջոցով։ Եվ Շահինյանը գոհ էր, որ զբաղվել է սպորտով, որ հնարավորություն ունի ավելի լավ խփելու թշնամուն։

Հյուսիսային Կովկասի համար մղված մարտերում Հրանտ Շահինյանը վիրավորվեց ոտքից։



Յոթ հազար մարդ է տեղավորվում Հելսինկիի «Մեսուխալի» դահլիճում։ Յոթ հազար հանդիսատես էր նայում սովետական մարմնամարզիկներին, երբ նրանք ելույթ ունեցան «Մեսուխալի» դահլիճում օլիմպիական խաղերի ժամանակ։

Օլիմպիական խաղերում սովետական մարմնամարզիկները գրավեցին առաջին տեղը։ Նրանց մեջ էր նաև մարմնամարզության Սովետական Միության բացարձակ չեմպիոն, սպորտի վաստակավոր վարպետ Հրանտ Շահինյանը։ Նա օլիմպիական երկու ոսկե և երկու արծաթե մեդալ ստացավ։

Ահա նա օղակների վրա է։ Թնդում է դահլիճը։ Նրա յուրաքանչյուր շարժում, յուրաքանչյուր վարժություն ուղեկցվում է հիացմունքի բացականչություններով։ Նրա ճարպիկ ու ճկուն շարժումները, վարժությունների ճշգրիտ կատարումները հիացնում են նաև դատավորներին, որոնք արժանացնում են Շահինյանին ոսկե մեդալի։

Օլիմպիական խաղերում ստացած չորս մեդալը Շահինյանի միջազգային առաջին հաղթանակները չեն։ Նա դեռ երիտասարդության Պրագայի ֆեստիվալում հասավ մեծ հաջողության, որտեղ ցուցադրական ելույթ ունեցավ. իսկ երկու տարի հետո Բուդապեշտում վեց ոսկե մեդալ ստացավ։ Այստեղ նա մարմնամարզության գծով առաջին տեղը գրավեց։ Ոսկե, արծաթե և բրոնզե յոթ մեդալ ստացավ նաև Բեռլինի ֆեստիվալում։

Հրանտ Շահինյանը մասնակցում է բոլոր միջազգային մրցումներին և բարձր է պահում մեր Հայրենիքի սպորտային պատիվը։

Նա ցուցադրական ելույթներ է ունեցել Լեհաստանում, Շվեդիայում և Նորվեգիայում։

1950 թվականին, երբ սովետական մարմնամարզիկները ցուցադրական ելույթների համար մեկնեցին Շվեդիա, բուրժուական թերթերը գրում էին. «Սովետական մարմնամարզիկները լավ են արել, որ եկել են Շվեդիա։ Մեզ մոտ, նրանք շատ բան ունեն սովորելու»։ Երբ մեր մարմնամարզիկները մեծ հաջողությամբ հանդես եկան, այդ նույն թերթերը ստիպված էին ուրիշ բան գրել. «Սովետական սպորտսմենների ելույթից մեր ստացած ոսկե մեդալների փայլը խամրեց»։

Ելույթ ունեցողների թվում էր նաև Հրանտ Շահինյանը։

Միջազգային մրցությունների ժամանակ Հրանտ Շահինյանը հանդիպում է ունեցել գրեթե աշխարհի բոլոր ծայրերից եկած սպորտսմենների հետ։ Ահա թե ինչ է պատմում նա.

— Բոլորը մի առանձին հիացմունքով, շատերը նույնիսկ նախանձով էին նայում մեզ՝ սովետական սպորտսմեններիս. իսկ երբ նրանք իմանում էին մեր երկրում սպորտի համար ստեղծված հնարավորությունների մասին, տխուր խոստովանում էին, որ իրենք այդ հնարավորություններից զուրկ են։

Նա պատմում էր, որ շատ երկրներից եկած սպորտսմեններ նույնիսկ չունեին անհրաժեշտ սպորտային հագուստ։ Հնդկաստանի ֆուտբոլիստները, օրինակ օլիմպիական խաղերին մրցման դուրս եկան ոտաբոբիկ։

Միայն մեր երկրում է, որ սպորտսմենները հնարավորություն ունեն կատարելագործվելու, զարգանալու։ Այդ է պատճառը, որ սպորտի գրեթե բոլոր կարևոր ձևերում առաջին տեղը գրավում են սովետական սպորտսմենները։

*Հրանտ Շահինյանը պիոներ է եղել։ Նա խորհուրդ է տալիս բոլոր պիոներներին զբաղվել սպորտով՝ մարմնամարզությամբ, թեթև ատլետիկայով և ցանկացած այլ ձևերով։*

*«Ինչ մասնագիտություն էլ դուք ընտրելու լինեք,— ասում է նա,— զբաղվեցեք սպորտով։ Սպորտը ձեզ կօգնի լինել առողջ, տոկուն, կօգնի ձեզ դիմանալ ամեն մի դժվարության։ Իսկ սովետական քաղաքացին, կոմունիզմ կառուցող մարդը այդպիսին պետք է լինի»։*



# ԵՐԵՎԱՆԻ ՊԼԱՆԵՏԱՐԻՆ

*Պ. ԳԵՎՈՐԳՅԱՆ*

*Նկ. Կ. ՀԱՅԱԳՈՐԾՅԱՆԻ*

Մի խումբ աշակերտներ հավաքվել էին բնագիտական թանգարանի առաջ և ուշադիր նայում էին պատին փակցված աֆիշային, որտեղ գրված էր՝ «Երևանի պլանետարի»։

— Ի՞նչ բան է պլանետարի,— հարցրեց նրանցից մեկը։

— Կինո է։

— Ո՛չ,— պատասխանեց մյուսը։

— Թատրոն է։

— Ոչ։

— Ես իմացա։ Անա գրված է՝ «Դասախոսություն»։ Նրանք ուզում էին բակ մտնել, երբ մոտեցան երկու քաղաքացի։

— Սա՞ է աստղադիտարանը,— ասաց անծանոթներից մեկը։

— Աստղադիտարան չէ, այլ պլանետարի է,—պնդեց մյուսը։ Եվ նրանք ներս մտան։ Աշակերտները հետևեցին նրանց։



Տոմսերը նոր էին գնել, երբ զանգը հնչեց։ Գնացին դահլիճ։ Իսկապես, պլանետարին ոչ կինոյի էր նման և ոչ էլ թատրոնի։ Փոքրիկ դահլիճի մեջտեղում տեղավորված էր մի ապարատ։ Նա ուներ երկու կիսագնդաձև մաս, որոնք բաժանված էին իրարից։ Նրանց մոտ էլ կային մի քանի փոքրիկ ապարատներ։

Այդ բոլորը ամրացված էին երկու մետր բարձրություն ունեցող մի հատուկ սարքավորման վրա։ Դահլիճի առաստաղն էլ գմբեթաձև էր։ Դահլիճում նստարանները տարօրինակ ձևով էին դասավորված։ Դասախոսի ամբիոնի մոտ դրված էին ապարատները, իսկ մարդիկ նստած էին բիկունքով դեպի դասախոսը։ Դահլիճում նստածների զգալի մասը պիոներներ ու դպրոցականներ էին։ Կային նաև բժիշկներ, ինժեներներ, ուսուցիչներ, ուսանողներ, զինվորականներ, կոլխոզնիկներ, եղբայրական ռեսպուբլիկաներից եկած էքսկուրսանտներ։

Դռները փակվեցին։ Բոլոր լուսամուտները ծածկված էին անթափանցիկ մահուդով, լամպերն էլ չէին վառվում. բայց և այնպես դեռ լույս էր։ Ապա դահլիճն աստիճանաբար սկսեց խորասուզվել խավարի մեջ։ Գմբեթաձև առաստաղը ծառայում է որպես էկրան։ Երկնակամարի վրա կամաց-կամաց երևում են շարժվող ամպերը։ Աստիճանաբար ամպերն անհետանում են։ Առաստաղի վրա գունավոր տառերով գրվում է այսօրվա դասախոսության թեմայի անունը. «Սովետական աստղագիտության նվաճումները»։

խավարի միջից լսվում է դասախոսի ձայնը.

— Մինչև աստղային երկնքի դիտումը կլսենք դասախոսություն:

Առաստաղ-էկրանի վրա ցուցադրվում է 50—60 գունավոր նկար: Դասախոսը ներկաներին մեկ առ մեկ ծանոթացնում է սովետական խոշոր աստղագետների հետ: Ցուցադրում ու բացատրում է նրանց կատարած աշխատանքները, որոնք համաշխարհային նշանակություն ունեն տիեզերքի ուսումնասիրման ու զարգացման ասպարեզում:

Դասախոսության առաջին մասը վերջանում է: Կրկին երևում են շարժվող ամպերը: Հանկարծ դահլիճն ավելի է խորասուզվում խավարի մեջ: Ամպերն աստիճանաբար սկսում են անհետանալ: Երկնակամարի վրա սկսում են փայլատակել նախ պայծառ, ապա և թույլ պայծառություն ունեցող աստղերը:

— Սա աստղալից երկինքն է,— կրկին լսվում է դասախոսի ձայնը խավարի միջից և նա պայծառ լուսասլաքով մեկ առ մեկ ցույց է տալիս համաստեղություններն ու աստղերը:

— Ահա Մեծ Արջը: Սրա միջոցով գտնում ենք և Բևեռային աստղը: Ահա Բևեռային աստղը, որի օգնությամբ մարդիկ դարեր շարունակ որոշել են երկրագնդի կողմերը: Այս լավագույն կողմնացույցը երբեք մարդկանց չի խաբում, որտեղ էլ որ նրանք գտնվելիս լինեն՝ ցամաքում, ջրի վրա, թե օդում:

— Ուշադիր նայեցեք երկնքին,— շարունակում է դասախոսը,— երկինքը շարժվում է. բոլոր աստղերն էլ շարժվում են: Բայց միևնույն է, Մեծ Արջի յոթ աստղի միջոցով միշտ էլ գտնում ենք Բևեռային աստղը, որը կարծես անշարժ կանգնած է նույն տեղում: Նրանց փոխադարձ դասավորությունը երբեք չի փոփոխվում: Մեծ Արջը Բևեռային աստղի շուրջն արդեն կես շրջան պտույտ կատարեց: Նշանակում է, դուք արդեն 12 ժամ բաց երկնքի տակ նստած լսում եք ինձ,— կատակում է դասախոսը:

— Արևն ու աստղերը ամենալավ ժամացույցներն են: Աստղագետներն աստղերի օգնությամբ են ուղղում ժամացույցները:

Այնուհետև ցուցադրվում է երկնակամարի լրիվ օրական ու տարեկան շարժումները, լուսնի և մոլորակների շարժման ճանապարհները: Երևանի միջօրեականի վրայով կատարվում է շուրջերկրյա ճանապարհորդություն: Ցուցադրվում են բևեռներում, հասարակածում և աշխարհագրական տարբեր լայնություններում երևացող աստղերն ու երկնակամարի շարժումները:

Երևանի միջօրեականի վրայով իջնում ենք հարավ, անցնում ենք հասարակածը, Մադագասկար կղզին, Անտարկտիդան, կրկին հասարակածին ենք հասնում Արևմտյան կիսագնդում և անցնում ենք Հյուսիսային կիսագունդը: Մի քանի րոպե հետո, մենք գտնվում ենք մեր սիրելի պապանինականների կայանում՝ Հյուսիսային բևեռում:

— Շարունակում ենք մեր ճանապարհորդությունը: Ահա մեր Հայրենիքի ցամաքային սահմանները, ահա և մեր սիրելի Մոսկվան: Եվ վերջապես մեր Երևանը...

Տեսնում ենք ամբողջ Անդրկովկասի քարտեզը, նրա աստղային երկինքը: Բևեռային աստղից լուսասլաքը կրկին ցած է իջնում և հորիզոնի կողմերը ցույց տվող փոքրիկ լամպերը վառվում են:

— Մենք շուրջերկրյա ճանապարհորդության ժամանակ, երկնակամարի վրա տեսանք ընդամենը վեց հազար աստղ, որոնց հացեները մանրամասնությամբ հայտնի են աստղագետներին:

Սկսվում է առավոտյան արշալույսը: Արևը դեռ չի ծագել, բայց երկնքում գտնվող բարձր ամպերն արդեն լուսավորվել են: Արևն սկսում է աստիճանաբար հորիզոնից բարձրանալ և լույսը լրիվ բացվում է... Այդ ամենը ցուցադրում էր ապարատը, որի գլոբուսանման մասում շատ փոքրիկ անցքեր կան: Գլոբուսի մեջ վառվում է փոքրիկ էլեկտրական լամպ: Այդ փոքրիկ անցքերից լույսի շիթերը ընկնում են գմբեթաձև առաստաղի վրա և թողնում են բնական երկնքի տպավորություն, իսկ մնացած ապարատներն օժանդակում և համապատասխան շարժումներ են տալիս:

Հանդիսատեսները գոհ հեռանում են պլանետարիից:

Դեռ շատ պիոներներ ու դպրոցականներ կան, որ չեն եղել պլանետարիում: Կան այնպիսիներն էլ, որոնք ոչ մի դասախոսություն բաց չեն թողնում: Օրինակ՝ Շահումյանի անվան դպրոցի 7-րդ դասարանի աշակերտուհի Մաղալյան Ժաննան և ուրիշները:

Երևանի պլանետարիի բացումը մի նոր նվեր է, որ ստացել են Երևանի և մեր ռեսպուբլիկայի աշխատավորները:



# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ


1. Հեղափոխության — Հ. ՀԱԿՈԲՅԱՆ . . .
2. Ձմեռային պալատի գրավումը — Լ. ՍԱՎԵԼԵՎ 3
3. Ռուսաց լեզուն — ՍԱՐՄԵՆ . . . . . . 5
4. Մեր դասարանը — Մ. ԿՈՐՅՈՒՆ . . . . 5
5. Լենինի—Ստալինի պարտիայի 19-րդ համագումարը . . . . . 6
6. Հրապարակում — Խ. ԳՅՈՒԼՆԱԶԱՐՅԱՆ . . 9
7. Տատիկն ու թոռնիկը — Մ. ԹԱՐՅԱՆ . . . 11
8. Ուշ աշուն — Ռ. ԿԱՍՊՅԱՆ . . . . . 11
9. Քարքարոտ բլուրների լանջերին—Վ. ՏԱԼՅԱՆ 12
10. Պատրաստված է Երևանում — Տ. ՇՈՂԵՆՑ . 16
11. Տարիներ առաջ — Մ. ՄԱԴԱԹՅԱՆ . . . 18
12. Հրապարակ ունեցանք — Վ. ՎԱՐԴԱՆՅԱՆ . 20
13. Կարմիր ծաղիկներ — ԶԱՆԴՐ. . . . . . 21
14. Նվերը — Ժ. ՆԱԼԲԱՆԴՅԱՆ . . . . . 2
15. Դաշտերը — Ն. ՄՈՒՇԵՂՅԱՆ . . . . . 2
16. Սովետական ջերմ արևի տակ . . . . .
17. Վարպետի ուղին — Ս. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ .
18. Երևանի պլանետարին — Պ. ԳԵՎՈՐԳՅԱՆ .
19. Մեր օրացույցը . . . . . . . .


Շապիկը՝ նկ. Ս. ՍՏԵՓԱՆՅԱՆ




*Խմբագիր՝* ՍԵՎՈՒՆՑ Գ.
*Խմբագրական կոլեգիա՝* ԱՆԱՆՅԱՆ Վ., ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԲԱՏԻԿՅԱՆ ՀՐ., ԻՍԱԲԵԿՅԱՆ Է., ՀԱԿՈԲՅԱՆ Գ., ՄՈՎՍԻՍՅԱՆ Ա., ՍԻՄԱԿ, ՍԻՄՈՆՅԱՆ Ե., ՏԱԼՅԱՆ Վ., ՕԶԱՆՅԱՆ Ս.

„Пионер" на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Маркса 21
*Հասցեն՝ Երևան, Մարքսի փողոց № 21, հեռախոսներ՝ 2-44-83, 2-39-06*
*ՎՖ 07156. Պատվեր 553. Տիրաժ 5000, Տպագրական 2¼ մամուլ. Ստորագրված է տպագրության 13/XI—1952 թ.*

*Հայպոլիգրաֆհրատի № 1 տպարան, Երևան, Ալավերդյան փող. № 65, 1952 թ.*

# 1952 ՄԵՐ ՕՐԱՑՈՒՅՑԸ

## 340 տարի

Թվելով Մոսկվայի ծառայությունները մեր Հայրենիքին, ընկեր Ստալինը ընդգծում է նաև, որ Մոսկվան պատմության ընթացքում երեք անգամ ազատագրել է մեր Հայրենիքը օտարերկրյա ճնշումից:

1610 թվականի աշնանը մի խումբ բոյարների դավաճանության պատճառով Մոսկվան ընկնում է լեհական Սիգիզմունդ թագավորի վարձու զորքերի ձեռքը: Պաշարվում է Կրեմլը: 1611 թվականի մարտին քաղաքում բռնկվում է ապստամբություն: Ոտքի է կանգնում Մոսկվայի բնակչությունը. փողոցները ծածկվում են բարիկադներով: Չկարողանալով ծնկի բերել մոսկվացիներին, լեհերը վարձու գերմանացիների ձեռքով հրդեհում են քաղաքը: Սա ցնցում է ամբողջ ռուս ժողովրդին: Բարձրանում է համաժողովրդական ահեղ մի շարժում: Շարժման ոգեշնչողներն էին՝ նիժնինովգորոդցի Կուզմա Մինինը և մոսկովյան իշխան Դմիտրի Պոժարսկին: 1612 թվականի օգոստոսին Մինինը դրսից, Պոժարսկին՝ ներսից շրջապատում են թշնամուն: Հերոսական պայքարով ժողովրդական ջոկատները հակառակորդին պարտության են մատնում և նոյեմբերի հինգին վերջնականապես ազատագրում Մոսկվան:



Անցնելով պայքարի և հերոսության փառապանծ ուղի, Մոսկվան դարձել է մեր սոցիալիստական Հայրենիքի մայրաքաղաքը, աշխարհի ազատասեր մարդկության դրոշը: Հենց դրա համար էլ մեր ժողովուրդը, աշխարհի ժողովուրդները մեծ սիրով ու հարգանքով են նշում Մոսկվային վերաբերող յուրաքանչյուր նշանավոր տարեթիվ:

## Յակուբ Կոլաս

Նոյեմբերի երեքին լրացավ Բելոռուսիայի ժողովրդական բանաստեղծ Յակուբ Կոլասի ծննդյան 70 տարին: Յանկա Կուպալայի հետ միասին Յակուբ Կոլասը բելոռուսական սովետական գրականության հիմնադիրն է: Կոլասի գրական գործունեության սկիզբը համընկնում է 1905 թվականի ռևոլյուցիայի հետ: Այդ տարիների բանաստեղծություններում Կոլասն իր ժողովրդին կոչ է անում պայքարել շահագործողների դեմ, հանուն ազատ և երջանիկ Բելոռուսիայի:

Ցարական ոստիկանությունն սկսում է հետապնդել Կոլասին: Գյուղացիների մեջ ռևոլյուցիոն աշխատանք տանելու համար 1908 թվականին նա ձերբակալվում է և բանտ նետվում: Բայց մարտիկ բանաստեղծը չի ընկճվում:



Անցնում են բանտի և պատերազմի ծանր տարիները: Բելոռուսիայում հաստատվում են սովետական կարգեր: Յակուբ Կոլասը գրողի և հասարակական գործչի իր ամբողջ եռանդը նվիրում է իր ժողովրդին: Նա գրում է իր լավագույն պոեմները, վիպակները, բազմաթիվ բանաստեղծություններ և պատմվածքներ:

Հատուկ ուժով է հնչում Կոլասի բանաստեղծական ձայնը Հայրենական Մեծ պատերազմի տարիներին: Այդ շրջանի բանաստեղծությունների համար Յակուբ Կոլասը արժանանում է Ստալինյան մրցանակի:

Այժմ ամբողջ բելոռուս ժողովուրդը սովետական ժողովուրդների մեծ ընտանիքում կոմունիզմ է կառուցում: Ժողովրդի մեծ գործին իր մարտական գրչով ակտիվորեն մասնակցում է բանաստեղծ Յակուբ Կոլասը:

## Հակոբ Հակոբյան

Բանաստեղծ Հակոբ Հակոբյանը 1931 թվականին պիոներական կազմակերպությանն ուղղած իր ողջույնում պատվիրում էր պիոներներին ապրել բոլշևիկի պես:

Սոցիալիզմի մեծ գործին Հակոբյանը սկսել է ծառայել աշակերտական տարիներից: Դեռևս գիմնազիայի 6-րդ դասարանում նա մասնակցել է աշակերտական գաղտնի խմբակներին, գրել ռևոլյուցիոն ոտանավորներ:

Թողնելով գիմնազիան, Հակոբյանն աշխատում է բանվորական միջավայրում, սերտորեն կապվում բանվորական շարժման հետ: Բարձրանում է 1905 թվականի ռևոլյուցիոն ալիքը. Հակոբյանն արդեն բոլշևիկների պարտիայի անդամ էր: Նա իր նշանավոր բանաստեղծություններում գովերգում է ռևոլյուցիան:

Բանաստեղծի ռևոլյուցիոն ոգին չի թուլանում նաև հետագայում: Իր «Մեռան՝ չկորան», «Մաքառման ժամին» և այլ գործերում, Հակոբյանը երգում է ռևոլյուցիայի մարտիկների անմահ սխրագործությունները, սրտի տրոփյունով սպասում ռևոլյուցիոն նոր վերելքին, ռևոլյուցիայի հաղթանակին:



Հաղթանակում է Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան: Ալեհեր բանաստեղծը մեծ ոգևորությամբ գովերգում է սովետական Հայրենիքը, սովետական ժողովրդի շինարարական աշխատանքները: Բարձր գնահատելով Հակոբյանի ծառայությունները, Սովետական Հայաստանի և Սովետական Վրաստանի կառավարությունները նրան շնորհում են ժողովրդական բանաստեղծի պատվավոր կոչում:

Հակոբյանը մեռավ 1937 թվականի նոյեմբերի 13-ին՝ 71 տարեկան հասակում:

# ՄԵԾ ՀՈԳԱՏԱՐՈՒԹՅՈՒՆ



Ամերիկյան ագրեսորները շարունակում են ոմրակոծել կորեական խաղաղ քաղաքները: Մնողներից զրկվել են տասնյակ հազարավոր երեխաներ: Նրանց համար երկրում բացված են բազմաթիվ մանկատներ: ՆԿԱՐՈՒՄ՝ զոհված հայրենասերների երեխաները մանկատնում:



Մոնղոլական ժողովրդական ռեսպուբլիկայում կազմակերպված են ռազմական ուսումնարաններ, որոնք կրում են ժողովրդական հերոս Սուխե-Բատորի անունը: Սուխե-Բատորյան ռազմական ուսումնարան կա նաև ռեսպուբլիկայի մայրաքաղաքում՝ Ուլան-Բատորում:

ՆԿԱՐՈՒՄ՝ այդ ուսումնարանի ուսման գերազանցիկներ — Գարամ-խանդ, Ցենդ-ժար և Դ…



Հայրական հոգատարություն է հանդես բերում Ռումինական ժողովրդական ռեսպուբլիկայի կառավարությունը երեխաների նկատմամբ: Այս տարի Ստալին քաղաքի պիոներները հիանալի նվեր ստացան: Հարուստ կալվածատիրոջ նախկին պալատի գեղատեսիլ այգում բացվեց Պիոներների պալատ:

ՆԿԱՐՈՒՄ՝ Պիոներների պալատի մոտ: